Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

**Խմբագրության հասցեն՝**
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—48
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11
52—99—36





# ԱՐԴԻ ԱՇԽԱՐՀՆ ՈՒ ԳՏՀ-Ն

**Հ. ԵՊԻՍԿՈՊՈՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, հակասություններն ու հակամարտ միտումները, համաշխարհային զարգացման գլխավոր ուղղությունն այսօր հասկանալ անհնարին է առանց հաշվի առնելու տեղի ունեցող մեծագույն գիտատեխնիկական հեղափոխությունը, նրա ներկան ու ապագան: Բաց անելով անսահման հնարավորություններ հասարակական առաջընթացի, նյութական և հոգևոր բարիքների առատություն ստեղծելու համար, այն դրա հետ մեկտեղ ծնել է վախ ու տագնապ, բարդ համընդհանուր պրոբլեմներ, որոնք շոշափում են քաղաքակրթության, ներկա և ապագա սերունդների ճակատագիրը: ԳՏՀ-ի նվաճումների չդադարող չարաշահումը, հրթիռամիջուկային զենքի, նարձակման տիեզերական միջոցների և զանգվածային ոչնչացման զենքի այլ նորագույն տեսակների ստեղծումը սպառնալիքի տակ են դրել ամբողջ աշխարհը, բուն կյանքի գոյությունը մոլորակի վրա:

«Մեր ժամանակների գիտությունն ու տեխնիկան,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— հնարավորություն են տալիս Երկրի վրա ապահովել բարիքների առատություն, նյութական պայմաններ ստեղծել հասարակության բարգավաճման համար, անհատի զարգացման համար: Եվ դրանք էլ, մարդու մտքի ու ձեռքի այդ կերտվածքները, դասակարգային եսամոլության ուժով, հանուն կապիտալիստական աշխարհում տիրապետող ընտրախավի հարստացման, ուղղվում են հենց մարդու դեմ: Սա է այն ճչացող հակասությունը, որով մարդկությունը հասել է XXI դարի նախաշեմին» (**ՍՄԿԿ ծրագիրը,** «Հայաստան» հրատ., 1986, էջ 27—28):

Մարդկությանը կհաջողվի՞ արդյոք լուծել այդ հակասությունը և վերացնել միջուկային ոչնչացման սպառնալիքը, գիտատեխնիկական հեղափոխության պտուղներն ուղղել բացառապես ստեղծագործական նպատակների, հօգուտ խաղաղության և պրոգրեսի. այս հարցը, ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում, արդի սոցիալ-քաղաքական պայքարում դարձել է գլխավոր հարցերից մեկը: Սոցիալիզմը, որակապես փոփոխելով գիտատեխնիկական առաջընթացի սոցիալական կողմնորոշումը հօգուտ մարդու, ողջ հասարակության, այդ ոլորտում ևս ցուցադրում է իր անառարկելի առավելությունները: Միավորվելով այդ առավելությունների հետ՝ ԳՏՀ-ն դառնում է մարդկության առաջընթացի հզոր ուժ արդի դարաշրջանում: Վերջինս բնութագրվում է կապիտալիզմից սոցիալիզմին անցումով, որի սկիզբը դրեց մեծ Հոկտեմբերը:

Այս ամենը բոլոր երկրներում և բոլոր շրջանակներում՝ մարքսիստական թե հակամարքսիստական, ուժեղացնում է հետաքրքրությունը ԳՏՀ-ի պրոբլեմի նկատմամբ, հասարակության ու մարդու, կյանքի բոլոր կողմերի, բնական միջավայրի, միջազգային հարաբերությունների, համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա նրա անող ազդեցության նկատմամբ:

Այժմ նույնիսկ բուրժուական շատ գաղափարախոսներ ԳՏՀ-ի վերաբերյալ իրենց

վերացումը, հասարակության բոլոր անդամների բարեկեցության անընդհատ աճը. քաղաքային և գյուղական բնակչության կյանքի կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցումը կնպաստեն սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի փոփոխմանը, բանվորների և գյուղացիների միջև, նրանց և մտավորականության միջև տարբերությունների վերացմանը, անդասակարգ կոմունիստական հասարակության հատուկ սոցիալական նոր հանրության ձևավորմանը:

ՍՄԿԿ XXVII համագումարում մատնանշվեցին գիտատեխնիկական առաջընթացի կազմակերպման գործում եղած լուրջ թերությունները ու բացթողումները, 70-ական թվականներին և 80-ական թվականների սկզբին երկրի սոցիալ-տնտեսական զարգացման գործում առաջացած բացասական միտումները, տնտեսության, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի էական դանդաղումը: Չէին կատարվում հնգամյա պլանների առաջադրանքները, ոչ լրիվ ծավալով էին իրականացվում նաև նախատեսված սոցիալական միջոցառումները: Համագումարն առաջադրեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու վիթխարի ծրագիր, որտեղ հատկապես շեշտվում է գիտատեխնիկական առաջընթացը ամեն կերպ ծավալելու և այդ հիման վրա ամբողջ ժողովրդական տնտեսությունը ինտենսիվ զարգացման ուղի փոխադրելու անհրաժեշտությունը:

Գիտատեխնիկական առաջընթացը պահանջում է բարելավել ընդհանուր և մասնագիտական կրթության դրվածքը, կադրերի պատրաստման որակը, գիտական հետազոտությունների ու մշակումների մակարդակը, գտնել գիտության, տեխնիկայի և արտադրության ինտեգրացիայի նոր ձևեր, ամրապնդել դպրոցի և գիտության ավանդույթները: Սովետական դպրոցի և գիտության առջև ծառացած այս և շատ այլ խնդիրների լուծման ուղին մատնանշված է ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցման հիմնական ուղղությունները» նախագծում:

Որպես սոցիալական մեծ նշանակություն ունեցող խնդիր առաջադրվում են ռեսուրսների խնայողության, նրանց տնտեսվար ծախսման, խելամիտ պահանջմունքների ձևավորման, անտնտեսվարության, վատնողության դեմ պայքարի, էներգախնայող, քիչթափոնային և անթափոն տեխնոլոգիայի ներդրման հարցերը:

ԳՏՀ-ի պայմաններում դա հատկապես կարևոր է, հաշվի առնելով, որ այն ուղեկցվում է բնության վրա անընդհատ մեծացող ներազդմամբ, տնտեսական շրջանառության մեջ նորանոր շրջաններ ու ռեսուրսներ ներգրավելով, ինդուստրացման և ուրբանիզացիայի պրոցեսների ուժեղացմամբ, որն անխուսափելիորեն սրում է էկոլոգիական իրավիճակը:

ԳՏՀ-ի պայմաններում անասելիորեն մեծանում է ինչպես արտադրությունը, այնպես էլ ամբողջովին հասարակությունը կառավարելու ֆունկցիաների դերն ու պատասխանատվությունը: Նրա նվաճումների հիման վրա աճած արդի վիթխարի արտադրաուժերը, ինչպես երբեք, առաջացնում են հասարակական վերահսկողության անհրաժեշտություն, իսկ մյուս կողմից՝ կառավարման հետագա կենտրոնացում: Այստեղից էլ՝ հասարակության քաղաքական կազմակերպման, դեմոկրատիայի, պետական իշխանության ձևերի, քաղաքական և ներկայացուցչական մարմինների փոխգործողության մարզերում պրոբլեմների բարդ համալիրի լուծման անհրաժեշտությունը:

Այս պրոբլեմների դիտարկման պրոցեսում բուրժուական գաղափարախոսները առաջադրել են բազմաթիվ տեսություններ՝ բացահայտ միլիտարիստական-ֆաշիստական կոնցեպցիաներից մինչև ավանդական լիբերալ բուրժուական ըմբռնումները: Արդի բուրժուական քաղաքագիտությունում հատկապես լայնորեն տարածվում են «հետինդուստրիալ հասարակության» տեսությունների հեղինակների հետևությունները: Այդ հեղինակները գիտության և գիտական մտավորականության աճող դերից եզրակացություն են անում բարձր մտավորականներից և լայնորեն իրազեկ մասնագետ-գիտնականներից բաղկացած նոր կառավարող ընտրանու ձևավորման վերաբերյալ: Նշված հեղինակների կարծիքով, բուրժուական հասարակությունում այդ ընտրանուն պետք է անցնի կամ նույնիսկ արդեն անցնում է իշխանությունը:

Վկայելով բուրժուական դեմոկրատիայի ճգնաժամը, անցյալում նրա հռչակած ժողովրդապետության սկզբունքներից հրաժարումը, այդ տեսությունները դրա հետ մեկտեղ չեն համապատասխանում ԳՏՀ-ի իրական պահանջմունքներին: Տեխնոլոգիա-



կան դետերմինիզմի ոգով դատողություններ անելով՝ բուրժուական գաղափարախոսները հաշվի չեն առնում քաղաքական պրոցեսների, պետության ու նրա մարմինների գործառնության ու գործունեության հետ գիտատեխնիկական առաջընթացի փոխկապվածության ամբողջ բարդությունը: Կապիտալիզմի պայմաններում ԳՏՀ-ի ազդեցության հետևանքով արտադրաուժերի կառավարման կենտրոնացման մեծացող պահանջմունքն ուղեկցվում է նոր հակադեմոկրատական պրոցեսներով, ավելի է ամրապնդվում մոնոպոլիաների և բուրժուական պետության դաշինքը: Հատկապես մեծ վտանգ է ներկայացնում ետպատերազմյան շրջանում առաջացած ռազմաարդյունաբերական կոմպլեքսը:

Սոցիալիստական երկրներում ԳՏՀ-ի զարգացումն ուղեկցվում է, մի կողմից, կառավարման կենտրոնացման հիմունքի ամրապնդմամբ, իսկ մյուս կողմից՝ բոլոր մակարդակներում դրա դեմոկրատացմամբ: ՍՄԿԿ ծրագրում կարևոր միջոցներ են նախատեսված ողջ քաղաքական սիստեմի դեմոկրատական հիմունքների ընդլայնման ու խորացման, հասարակության կառավարման գործում աշխատավորներին ակտիվորեն ներգրավելու, քաղաքացիների իրավունքներն ու ազատություններն ընդլայնելու, դրանց լիակատար իրականացման համար առավել բարենպաստ պայմաններ ու երաշխիքներ ստեղծելու նպատակով:

Դիտարկելով ԳՏՀ-ի դերն արդի աշխարհում, հասարակության սոցիալիստական կազմակերպման կարևորագույն առավելությունները, չի կարելի հաշվի չառնել նաև միջազգային հարաբերությունների ոլորտը, համաշխարհային քաղաքականությունում, և առաջին հերթին, այսօր մարդկության առջև ծառացած ամենահրատապ՝ խաղաղության ու պատերազմի պրոբլեմի լուծման գործում առաջացած նոր իրողությունները:

ԳՏՀ-ի ձեռքբերումները ռազմական նպատակներով օգտագործելը, քաղաքականությունը ինքնաոչնչացման եզրին հասցնող կործանարար միջոցների ստեղծումը պահանջում են նոր մոտեցում համաշխարհային քաղաքականությունում, հրաժարում քաղաքական մտածողության բազմաթիվ հնացած պատկերացումներից ու եղանակներից: Պատերազմն այլևս չի կարող լինել արտաքին քաղաքականության, միջազգային վեճերի լուծման միջոց: Միջուկային պատերազմում հաղթողներ չեն լինի: Այս ճշմարտությունն առավել ակնհայտ է դառնում բոլորի համար:

Հասարակության կյանքից պատերազմի բացառումը, համընդհանուր և լիակատար զինաթափումը դարձել են համամարդկային, համընդհանուր խնդիր, սոցիալական առաջընթացի, մարդկության խաղաղ ապագայի, բուն ԳՏՀ-ի ստեղծարար հնարավորությունների իրականացման օբյեկտիվ պահանջմունք:

«Սուր հակասություններով հագեցված աշխարհում, սպառնացող աղետի դեմ հանդիման,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— կա միակ խելամիտ, միակ ընդունելի ուղին՝ **տարբեր հասարակարգերի պատկանող պետությունների խաղաղ գոյակցությունը»** (**ՍՄԿԿ ծրագիրը**, էջ 28):

ՍՍՀՄ-ը, սոցիալիստական ընկերակցության բոլոր երկրներն իրենց արտաքին քաղաքական գործունեությունում հետևողականորեն պաշտպանում են խաղաղ գոյակցության սկզբունքները, հանդես են գալիս հօգուտ լարվածության թուլացման, պետությունների միջև համակողմանի համագործակցության, հանուն համընդհանուր և լիակատար զինաթափման՝ միջազգային խիստ վերահսկողության ներքո:

Չնայած արդի համաշխարհային իրադրության բոլոր բարդություններին, իմպերիալիստական հետադիմության հակակայությանը, խաղաղ գոյակցության սկզբունքները համառորեն իրենց համար ուղի են հարթում՝ առավել վճռականորեն ներազդելով միջազգային հարաբերությունների զարգացման վրա: Ողջ մոլորակով մեկ ծավալվում են նոր հզոր հակապատերազմական շարժումներ: Աշխարհում այժմ կան ուժեր, որոնք ի վիճակի են փակելու պատերազմի ճանապարհը և թույլ չտալու, որպեսզի գիտության ու տեխնիկայի մեծագույն նվաճումները դառնան մարդկության ինքնաոչնչացման գործիք:

«...Որքան էլ մեծ լինի իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների քաղաքականության հետևանքով աշխարհին սպառնացող վտանգը,— ընդգծված է ՍՄԿԿ ծրագրում,— **համաշխարհային պատերազմի ճակատագրական անխուսափելիություն չկա: Պատերազմը կանխել, մարդկությանը աղետից փրկել կարելի է: Դա է սոցիալիզմի, մեր մոլորակի բոլոր առաջադեմ, խաղաղասեր ուժերի պատմական կոչումը»:**

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ. ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ ԵՎ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

**ՅՈՒ. ՍՈՒՎԱՐՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր
**Ռ. ԱՎԱԼՅԱՆ**
ՀՍՍՀ պետպլանի բաժնի պետ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ սովետական հասարակության համակողմանի առաջընթացի ուղին երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումն է: Արագացման ստրատեգիան ենթադրում է տնտեսական աճի և գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի բարձրացում, էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցում, աշխատանքի կազմակերպման և խթանման արդյունավետ ձևերի կիրառում:

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, կուսակցության ստրատեգիական գծի իրականացման գլխավոր միջոցները գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների բազայի վրա ժողովրդական տնտեսության խոր վերափոխումն է, տնտեսական մեխանիզմի և կառավարման սիստեմի վերակառուցումը: Սոցիալ-տընտեսական զարգացման արագացման նշված միջոցների գլխավոր առանձնահատկությունը կայանում է նրանում, որ դրանք փոխկապակցված են և փոխպայմանավորված: Դեռ ավելին, տնտեսական մեխանիզմը, հանդիսանալով սոցիալիստական արտադրական հարաբերությունների կոնկրետ դրսևորում, մեծապես պայմանավորում է գիտատեխնիկական առաջադիմության տեմպերը և նրա նվաճումների արդյունավետ ներդրումը արտադրության մեջ: Ուստի տնտեսական մեխանիզմի կատարելագործումը ներկայումս ձեռք է բերում բացառիկ կարևոր նշանակություն:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը մշտապես իրականացնում են միջոցառումներ՝ ուղղված տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը: Դրանց թվում են՝ տնտեսական ռեֆորմը, որն իրականացվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. սեպտեմբերյան պլենումի որոշումների հիման վրա, «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հուլիսի 12-ի որոշմանը համապատասխան իրականացված միջոցառումները: Դրանց գլխավոր բովանդակությունը պլանավորման և կառավարման հետագա բարելավումն ու տնտեսական խըթանման նոր մեթոդների կիրառումն էր:

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման ժամանակակից փուլը հիմնված է սոցիալիստական տնտեսավարման հարուստ փորձի ստեղծագործական ընդհանրացման և աշխատանքի կազմակերպման նոր ձևերի կիրառման վրա, որոնք իրականացվում են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ տնտեսական գործունեության բնագավառում արտադրական միավորումների (ձեռնարկությունների) իրավունքների ընդլայնման և աշխատանքի վերջնական արդյունքների նկատմամբ նրանց պատասխանատվությունը բարձրացնելու լրացուցիչ միջոցառումների մասին որոշմանը համապատասխան: Տնտեսավարման նոր մեթոդները կոչված են կենտրոնացված պլանավորումը լավագույնս զուգակցելու ձեռնարկությունների տըն-



հաշվարկային ինքնուրույնության և պատասխանատվության ընդլայնման հետ: Նոր պայմաններում ավելի քան կիսով չափ կրճատվել է ձեռնարկություններին իջեցվող դիրեկտիվ ցուցանիշների թիվը, ընդլայնվել տնտեսական նորմատիվների գործողության ոլորտը, ապահովվել արտադրական ռեսուրսների պահանջմունքների կապը տնտեսական գործունեության վերջնական ցուցանիշների հետ: Աշխատանքային կոլեկտիվներին հնարավորություն է ընձեռված պրոֆեսիոնալ բարձր վարպետության և մասնագիտությունների համատեղման համար սահմանել հավելավճարում, որի աղբյուրն է աշխատավարձի պլանային ֆոնդի տնտեսումը: Այս միջոցառումը կոչված է խթանելու պակաս թվով աշխատողներով արտադրության ծավալի աճը: Խթանման ֆոնդերի ստեղծումը սերտորեն կապված է մատակարարումների պլանի կատարման, ինչպես նաև արտադրության արդյունավետության հետ (ապրանքային արտադրության մեկ ռուբլու հաշվով ծախսերի նվազեցում, աշխատանքի արտադրողականության բարձրացում, շահույթի աճ):

Արդյունաբերության տարբեր ճյուղերում անցկացված տնտեսափորձը ցույց տվեց, որ բարձր վերջնական արդյունքների հասնելու համար ձեռնարկությունների կոլեկտիվների շահագրգռվածությունը բարձրացնելուն ուղղված միջոցառումները հիմնականում դրականորեն են անդրադառնում ձեռնարկությունների գործունեության քանակական և որակական ցուցանիշների վրա:

Մեր հանրապետությունում 1984—1985 թթ. տնտեսավարման նոր պայմաններում են աշխատել էլեկտրատեխնիկական և հաստոցաշինական արդյունաբերության, քիմիական և գյուղատնտեսական մեքենաշինության, սարքաշինության մի շարք ձեռնարկություններ: 1985 թ. դրանց միացան թեթև արդյունաբերության 40 արտադրամիավորումներ և ձեռնարկություններ: Ներկայումս ՀՍՍՀ-ում նոր պայմաններում են աշխատում միութենական, միութենական-հանրապետական և հանրապետական ենթակայության 22 արդյունաբերական մինիստրությունների 212 միավորումներ և ձեռնարկություններ, ինչպես նաև ՀՍՍՀ կապի և կենցաղսպասարկման մինիստրությունների բոլոր ձեռնարկությունները:

1985 թ. նոր պայմաններում աշխատող 77 ձեռնարկություններին բաժին է ընկել ամբողջ արդյունաբերության արտադրանքի իրացման ծավալի 37 տոկոսը, ապրանքային արտադրանքի 36,5 տոկոսը: Դրանցում զբաղված էին հանրապետության արդյունաբերության բոլոր աշխատողների ընդհանուր թվաքանակի 41,1 տոկոսը: Նոր ձևով աշխատանքի փորձը ցույց տվեց, որ ձեռնարկությունների իրավունքների ընդլայնումը և աշխատանքի արդյունքների նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացումը մեր հանրապետության արդյունաբերության մեջ նույնպես տվեցին դրական արդյունք, արագացան արտադրանքի ծավալի, աշխատանքի արտադրողականության, շահույթի աճի տեմպերը, բարելավվեցին մատակարարումների հաշվառմամբ արտադրանքի իրացման պլանի կատարման ցուցանիշները, մեծացան նյութական խրախուսման ֆոնդերը: Այսպես, տնտեսավարման նոր ձևեր կիրառած ձեռնարկություններում ապրանքային արտադրանքի աճի տեմպերը 1984 և 1985 թթ. կազմել են 7,3 և 7,2 տոկոս, իսկ հին ձևով աշխատող ձեռնարկություններում համապատասխանաբար՝ 6,7 և 6,3 տոկոս: Արագացել են աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, մեծացել որակի բարձրագույն կատեգորիայով արտադրանքի թողարկման ծավալը:

Նոր պայմաններում աշխատող ձեռնարկությունները մատակարարումների հաշվառմամբ արտադրանքի իրացման ծավալի 1985 թ. պլանը կատարել են 99,2, իսկ մյուս ձեռնարկությունները՝ 97,2 տոկոսով: Համապատասխանաբար բարձրացել է արտադրանքի ինտենսիվացման մակարդակը: Ձեռք է բերվել ապրանքային արտադրանքի ինքնարժեքի 5,4 **մլն** ռուբլու խնայողություն, ապահովվել է նյութական ծախսերի զգալի տնտեսում:

Բարելավվել է աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի հարաբերակցությունը: 1984 թ. աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս աճին համապատասխանում էր միջին աշխատավարձի 0,63 տոկոս աճ, իսկ 1985 թ.՝ 0,47 տոկոս: Այն ձեռնարկություններում, որոնք չեն անցել տնտեսավարման նոր պայմաններին, այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմել են 0,63 և 0,71 տոկոս: Նվազել է բանվորական ուժի հոսունությունը, կրճատվել են աշխա-

ժամանակի կորուստները և արտաժամյա աշխատանքները, կարգավորվել արտադրության համաչափությունը:

Զգալիորեն աճել է աշխատավարձի պլանային ֆոնդի խնայողության հաշվին տարբեր հավելավճարումներ ստացող աշխատողների քանակը: Նյութական խրախուսման այս ձևերը 1985 թ., 1984 թ. համեմատությամբ, ավելացել են 61,5 տոկոսով, այդ թվում մասնագիտությունների համատեղության համար՝ 43,2 տոկոսով:

Տնտեսավարման նոր պայմաններում ձեռնարկությունները հնարավորություն ունեն արտադրության զարգացման ֆոնդի հաշվին ապահովելու արտադրության տեխնիկական վերազինումը, ընդ որում տվյալ ֆոնդում կուտակված միջոցները առաջին հերթին են ապահովվում նյութատեխնիկական ռեսուրսներով: Ձեռնարկություններն իրավունք ունեն օգտագործելու նաև հիմնական նորոգումների համար նախատեսված ամորտիզացիոն մասհանումների միջոցների մի մասը: Նրանք կարող են գիտության և տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդի միջոցների մի մասը օգտագործել նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման միջոցառումների իրականացման համար: Ամբողջությամբ աշխատանքի կազմակերպման նոր ձևերի կիրառումը նպատակամղված է գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը: Նոր պայմաններում աշխատող ձեռնարկությունները 1985 թ. ստեղծել են 44,2 **մլն** ռուբլու արտադրության զարգացման ֆոնդ, որը 18,2 տոկոսով ավելի է 1984 թ. համեմատությամբ: Ընդ որում արտադրության զարգացման ֆոնդի միջոցների մոտավորապես կեսը (49,8 տոկոսը) ստացվել է եկամուտների հաշվին, 43,2 տոկոսը կազմել են ամորտիզացիոն մասհանումները:

Սակայն նորագույն տեխնիկայի ստեղծման և ներդրման բնագավառում զգալի տեղաշարժեր չեն եղել: Նոր պայմաններում աշխատող ձեռնարկությունները 1985 թ. գիտահետազոտական աշխատանքների պլանը կատարել են 92 տոկոսով, այդ թվում արտադրական պրոցեսների մեքենայացմանը՝ 68,8, արտադրանքի տեխնիկական մակարդակի հիմնական ցուցանիշների և թողարկվող արտադրանքի կարևորագույն տեսակներին՝ 88,2 տոկոսով: Հաստոցաշինական և թեթև արդյունաբերության ձեռնարկությունները նույնպես թերակատարել են գիտահետազոտական աշխատանքների պլանները: Մի շարք ձեռնարկություններում պատշաճ ուշադրություն չի դարձվում արտադրանքի նորացման և որակի բարձրացման հարցերին: Դրանց թվում են «Հայէլեկտրամեքենա», «Գառնի», «Հայէլեկտրաշարժիչ» և այլ միավորումներ:

Անհրաժեշտ է նաև նշել, որ 1985 թ., 1984 թվականի համեմատությամբ, մի շարք ցուցանիշների գծով նկատվել են բացասական միտումներ: Էլեկտրատեխնիկական, ինչպես նաև սարքաշինական ձեռնարկություններում մատակարարումների պլանը կատարվել է 98,7 տոկոսով: Այդ ցուցանիշը թերակատարել է յուրաքանչյուր երրորդ ձեռնարկություն: Մի շարք ձեռնարկություններ չեն կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինչպես նաև ապրանքային արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանները: Թերակատարվել են նրանց վերակառուցման և տեխնիկական վերազինման, հիմնական ֆոնդերի գործարկման պլանները: Անբավարար են արտադրության արդյունավետության աճի տեմպերը և նրա ինտենսիվացման մակարդակը: Ըստ 1986 թ. առաջին կիսամյակի տվյալների վերը նշված բացասական միտումները չեն հաղթահարված:

Նվազել են արտադրանքի ծավալի, աշխատանքի արտադրողականության, որակի բարձրագույն տեսակի արտադրանքի աճի տեմպերը: Մատակարարումների հաշվառմամբ արտադրանքի իրացման պլանը կատարվել է 98,5 տոկոսով (տնտեսավարման նոր պայմանների չանցած ձեռնարկություններում այդ ցուցանիշը կազմում է 98,4 տոկոս): Թեթև արդյունաբերության մինիստրությունը և «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումը առաջին կիսամյակում չկատարեցին աշխատանքի արտադրողականության աճի պլանները: Դրանց ցուցանիշների վատացումը բացասաբար ազդեց ողջ հանրապետության արդյունաբերության ցուցանիշների վրա:

Նշվածը վկայում է, որ ոչ բոլոր ձեռնարկություններին և ճյուղերին է հաջողվել արդյունավետ աշխատել տնտհաշվարկային ինքնուրույնության պայմաններում: Դա հիմնականում տնտեսավարման նոր պայմաններին անցնելուց առաջ և հետո տընտեսական-կազմակերպական անբավարար աշխատանքի արդյունք է: Տնտեսափորձի իրականացման պրոցեսում բացահայտվեցին նաև մինչև վերջ չմշակված տնտեսագիտական պրոբլեմներ:



Տնտեսավարման նոր ձևերի լայնամասշտաբ կիրառման ընթացքում երևան եկան աշխատանքի կազմակերպման մշակվող սկզբունքների հետագա կատարելագործման ուղղությունները: Առաջինը կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործումն է: Ինչպես հայտնի է, աշխատանքի նոր մեթոդի անցկացման ընթացքում որոշ մինիստրություններ մեծ մասամբ խոչընդոտում էին ձեռնարկությունների իրավունքների ընդլայնմանը: Դա տեղի էր ունենում այն պատճառով, որ նորովի չէին վերաբաշխվել մինիստրությունների և ձեռնարկությունների իրավունքները ու ֆունկցիաները, այսինքն՝ չէր ապահովվել կառավարման կազմակերպման համապատասխան կատարելագործումը:

Երկրորդը ձեռնարկությունների անցումն է լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնավարկավորման: Այդ միջոցառումները հնարավորություն կտան ուժեղացնել տնտեսավարման վերջնական արդյունքների համար աշխատավորական կոլեկտիվների շահագրգռվածությունը, արտադրական ծախսերը սերտորեն շաղկապել տնտեսական արդյունքների հետ: Լիակատար տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման արդյունավետությունը ապացուցված է մի շարք ձեռնարկությունների ու կազմակերպությունների հաջող փորձով:

Երրորդը գիտատեխնիկական առաջընթացի պլանային կառավարման կատարելագործումն է, գիտության ու տեխնիկայի զարգացման ցուցանիշների և տնտեսական գործունեության վերջնական արդյունքների միջև սերտ կապի ապահովումը:

Կարևոր նշանակություն ունի նյութական խթանման նպատակամղվածության ուժեղացումը դեպի արտադրության ծավալի աճը և արտադրական ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը: Նոր պայմաններում նյութական խթանման համակարգն ավելի շատ կողմնորոշում է մատակարարումների պլանի կատարման ապահովումը և քիչ ազդեցություն ունի արտադրության արդյունավետության ցուցանիշների վրա:

Տնտեսական գործունեության արդյունքները մեծամասամբ պայմանավորված են նյութատեխնիկական մատակարարմամբ: Առկա է նրա կազմակերպման և պլանավորման հետագա բարելավման անհրաժեշտությունը, աստիճանական անցումը մատակարարման ֆոնդավորվող համակարգից՝ արտադրության միջոցների մեծածախ առևտրին, սպառողների ու մատակարարների միջև ուղղակի կապերի հաստատմանը:

Կարևոր պրոբլեմ է «ըստ ձեռքբերված մակարդակի» պլանավորման մեթոդից հրաժարումը: Տնտեսավարման նոր պայմաններում աշխատավարձի և նյութական խրախուսման պլանային ֆոնդերը ձևավորվում են նրանց բազային մակարդակի հիման վրա, իսկ բազային ֆոնդի ծավալի վրա ավելանում է ըստ գործունեության վերջնական արդյունքների ստացվող լրացուցիչ ֆոնդը:

Աշխատավարձի լրացուցիչ ֆոնդի համար որոշիչը նորմատիվային զուտ արտադրանքի մեկ ռուբլու հաշվով աշխատավարձի նորմատիվն է, իսկ նյութական խրախուսման լրացուցիչ ֆոնդի համար՝ ապրանքային արտադրանքի մեկ ռուբլու հաշվով ծախսերի սահմանային մակարդակի պլանավորված նվազեցման առաջադրանքը, ինչպես նաև արտադրանքի իրացման պլանների կատարումը՝ ըստ մատակարարումների: Ֆոնդագոյացման այս կարգը պահպանվում է տնտեսավարման նոր պայմաններում, մինչդեռ աշխատավարձի և նյութական խրախուսման պլանային ֆոնդերի կախվածությունը նրանց բազային մեծություններից չի նպաստում արտադրության արդյունավետության աճի ներարտադրական ռեզերվների բացահայտմանն ու օգտագործմանը: Աշխատավարձի ֆոնդը պետք է համապատասխանի արտադրության վերջնական արդյունքների մեծությանը, նրանց միջև պետք է գոյություն ունենա անմիջական ուղիղ կապ: Այդ տեսակետից առավել արդյունավետ կարող են լինել աշխատավարձի ֆոնդի գոյացման հետևյալ մեթոդները.

— նորմատիվային, երբ այդ ֆոնդն ամբողջությամբ որոշվում է հնգամյակի համար հաստատված նորմատիվով՝ փաստացի զուտ արտադրանքի մեկ ռուբլու հաշվով.

— մնացորդային, երբ աշխատավարձի ֆոնդը կազմավորվում է ձեռնարկության համախառն եկամուտի մի մասի ձևով, որը մնում է պարտադիր վճարումներից և տնտեսական խթանման ֆոնդերի ստեղծումից հետո:

Անցումը լրիվ տնտհաշվարկի և արտադրական օղակների ինքնուրույնության ընդլայնումը սերտորեն կապված են աշխատավարձի ֆոնդի ինչպես գոյացման, այն-

պես էլ ծախսման հետ։ Ուստի տնտեսական մեխանիզմի կատարելագործման նպատակով կարևորվում է նաև աշխատավարձի ֆոնդագոյացման արդյունավետ մեթոդների որոնումը։ Այդ նպատակով սոցիալիզմի երկրներում օգտագործում են դրա գոյացման տարբեր համակարգեր։ Օրինակ, ԲԺՀ-ում աշխատավարձի ֆոնդը ձևավորվում է արդյունքային-մնացորդային մեթոդով, ՀԺՀ-ում ընդլայնված են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար միջին աշխատավարձի ավելացման հնարավորությունները։ Մեզ մոտ նպատակահարմար է փորձարկել նաև աշխատավարձի ֆոնդագոյացման մնացորդային մեթոդի գործնական կիրառման հնարավորությունները։

Հարկ է նշել, որ դեռևս լիովին չեն հաղթահարվել տնտհաշվարկային օղակների արտադրական գործունեության ցուցանիշների համակարգին բնորոշ թերությունները։ Տնտեսավարման նոր պայմաններում տնտեսական և սոցիալական զարգացման տարեկան պլաններում հաստատվում են. արտադրության գծով՝ 4 ցուցանիշ, նոր տեխնիկայի, ինքնարժեքի և ֆինանսների, շինարարության գծով՝ 2-ական, նյութատեխնիկական մատակարարման գծով՝ 1, աշխատանքի՝ 3 ցուցանիշ և 6 տընտեսական նորմատիվներ։ Միավորման տնտեսական գործունեությունը գնահատվում է 6 ցուցանիշներով։

Մասնավորապես արտադրության հիմնական ցուցանիշներ են հանդիսանում արտադրանքի թողարկումը՝ բնեղեն արտահայտությամբ, իրացվող արտադրանքի ծավալը՝ հաշվի առնելով մատակարարումների առաջադրանքները, որակի բարձրագույն կատեգորիայով թողարկվող արտադրանքի տեսակարար կշիռը։ Գիտատեխնիկական առաջադիմության գծով պլանավորվում են նոր տեխնիկայի ներդրման, աշխատանքի գիտական կազմակերպման գիտատեխնիկական ծրագրի, նոր տեխնիկայի և տեխնոլոգիական պրոցեսների մշակման, յուրացման, ներդրման առաջադրանքները։

Աշխատանքի բաժնում հիմնական ցուցանիշը համարվում է արտադրողականության աճը, որը հաշվարկվում է ըստ նորմատիվային զուտ արտադրանքի (ՆԶԱ)։ Սա արտադրանքի իրացման և մատակարարումների առաջադրանքների կատարման հետ մեկտեղ նույնպես հաստատվող ցուցանիշ է։ Հաստատվող և գնահատող ցուցանիշների մեջ կարևոր տեղ է գրավում ապրանքային արտադրանքի մեկ ռուբլու հաշվով ծախսերի սահմանային մակարդակը, որը կոչված է ապահովելու տեսակարար արտադրական ծախսերի նվազեցումը։

Ձեռնարկության ֆինանսական դրությունն արտահայտվում է շահույթի ցուցանիշի միջոցով։ Հաստատվում են հետևյալ տնտեսական նորմատիվները.

— արդյունաբերական-արտադրական անձնակազմի աշխատավարձը ՆԶԱ-ի մեկ ռուբլու հաշվով.

— նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության, արտադրության զարգացման ֆոնդերի կազմավորումը.

— գիտության և տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդերի գոյացումը (մինիստրությունների համար).

— միջին աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության աճի հարաբերակցության կարգավորումը։

Տնտեսավարման նոր պայմաններում ցուցանիշների համակարգի հիմնական արժանիքը նրա ուղղվածությունն է քանակական և որակական վերջնական արդյունքներին, ձեռնարկությունների տնտհաշվարկային ինքնուրույնության ընդլայնումը և պատասխանատվության բարձրացումը։ Ցուցանիշների և նորմատիվների նոր համակարգը մշակված է հակածախսային տնտեսական մեխանիզմի համար և սկզբունքորեն ուղղված է արտադրության սոցիալ-տնտեսական արդյունավետության բարձրացմանը։

Սակայն այստեղ չկա միասնական արժեքային ցուցանիշ։ Ինչպես հայտնի է, ոչ բոլոր ձեռնարկություններն են անցել ՆԶԱ-ի մեթոդին։ Բացի այդ, ՆԶԱ-ն նույնպես զերծ չէ որոշակի թերություններից։ Նրանում չի արտահայտվում նոր ստեղծվող արդյունքի լրիվ արժեքը, մասնավորապես նկատի ունենք առարկայացած աշխատանքի այն տնտեսումը, որը ձեռք է բերվում հնգամյակի ընթացքում՝ հաստատված սկզբնական նորմատիվների համեմատ։ Անթերի չէ նաև նրա հաշվարկման մշակման կարգը, որն ունի չհիմնավորված պայմանականություններ։



Հարց է ծագում. այդ պայմաններում ինչպե՞ս որոշել արտադրության աճի տեմպերը, գնահատել արտադրության տնտեսական արդյունավետության ցուցանիշները (աշխատանքի արտադրողականությունը, ֆոնդահատույցը, արտադրանքի նյութատարությունը՝ ըստ ձեռնարկությունների, ճյուղերի և ամբողջ ժողովրդական տնտեսության)։ Պաշտոնապես ընդունված արժեքային միջանցիկ ցուցանիշի բացակայության պայմաններում նրա ֆունկցիան շարունակում է կատարել համախառն արտադրանքի ծավալի ցուցանիշը՝ վաղուց հայտնի և քննադատված թերություններով։

Համախառն արտադրանքի ցուցանիշի թերությունների մասին շատ դիպուկ ասվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թ. հունիսյան պլենումում, որտեղ ընկ. Մ. Ս. Գորբաչովը ընդգծեց, որ առանց համախառն արտադրանքի պրոբլեմը լուծելու «մենք հազիվ թե հաջողությամբ իրականացնենք ռեսուրսախնայողական տեխնոլոգիաներ ներդնելու և էկոնոմիկայի ծախսողական բնույթը հաղթահարելու խնդիրը»։

Ուստի մեզ հիմնավորված է թվում արտադրության ծավալի միասնական միջանցիկ ցուցանիշ մտցնելու առաջարկությունը. դա փաստացի զուտ արտադրանքն է։ Ընդ որում նպատակահարմար է այն դարձնել ոչ թե հաստատվող, այլ գնահատող ցուցանիշ։

Անհրաժեշտ է նաև նշել, որ ցուցանիշների համակարգում անբավարար են արտացոլված արտադրական ռեսուրսների օգտագործման ընդհանուր արդյունավետությունը, արտադրության ինտենսիվացման մակարդակը, ինչպես նաև նոր տեխնիկայի ներդրման սոցիալ-տնտեսական արդյունքները։

Աշխատանքի արտադրողականության աճը արտահայտում է կենդանի աշխատանքի օգտագործման արդյունավետությունը, ապրանքային արտադրանքի մեկ ռուբլու հաշվով ծախսերի սահմանային մակարդակը՝ արտադրության ծավալի միավորի վրա կատարված ընթացիկ ծախսերը։ Այս ցուցանիշները չեն արտացոլում հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը, ինչպես նաև տնտեսական արդյունավետության ամփոփիչ գնահատականը։ Դրանց հիման վրա հնարավոր չէ գնահատել արտադրության ինտենսիվացման մակարդակը։ Մեր կարծիքով, արտադրության արդյունավետության և ինտենսիվացման մակարդակի գնահատման պրոբլեմը կարելի է լուծել արտադրողականության պլանավորման հիման վրա՝ հաշվի առնելով կենդանի և առարկայացված աշխատանքի ծախսումները, կիրառելով ամբողջական աշխատանքի ծախսումների և փաստացի զուտ արտադրանքի աճի համադրման մեթոդը (տե՛ս Проблемы воспроизводства в условиях НТП, Ереван, 1985, с. 285—290)։ Անշուշտ, այս առաջարկությունը տնտեսական և սոցիալական զարգացման պլանի որակական ցուցանիշների կատարելագործման հնարավոր տարբերակներից մեկն է։

Ամբողջովին վերցրած՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործման պրոբլեմի լուծումը կարևորված է ՍՄԿԿ XXVII համագումարում, որտեղ ընկ. Մ. Ս. Գորբաչովն ընդգծեց. «Այժմ մենք ձգտում ենք փոխել տնտեսական մեխանիզմի ուղղվածությունը, հաղթահարել նրա ծախսողական բնույթը, նպատակամղել դեպի որակի և արդյունավետության բարձրացում, գիտատեխնիկական առաջադիմության արագացում, մարդկային գործոնի դերի ուժեղացում։ Սա գլխավորն է, որ իրականում կնշանակեր սոցիալիստական արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործում և նոր ասպարեզ կբացեր արտադրողական ուժերի զարգացման համար» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 54)։

1987 թ. հունվարի 1-ից տնտեսավարման նոր պայմաններում կաշխատեն արդյունաբերության բոլոր ճյուղերը։ Առաջարկություններ են նախապատրաստվում՝ հասարակական օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտը, առևտուրը, բնակարանային-կոմունալ տնտեսության կազմակերպությունները տնտեսավարման նոր մեթոդի փոխադրելու նպատակով։

Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործումը կնպաստի երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը, բարձր կազմակերպված և արդյունավետ էկոնոմիկային, սովետական ժողովրդի կենսամակարդակի մի նոր աստիճանի բարձրացմանը։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՏԱԿՄԱՆ ԵՎ ՍՊԱՌՄԱՆ ՓՈԽՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒՄԸ

**Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
**Տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր**

Հարգելի խմբագրություն.
ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերն ուսումնասիրելիս հարկ եղավ պարզաբանել նաև սոցիալիզմի ժամանակ կուտակման և սպառման պրոբլեմը: Ունկնդիրներն այդ հարցը յուրացնելիս հանդիպում են որոշակի դժվարությունների: Խնդրում ենք ձեր ամսագրի էջերում պարզաբանել այն:

*Կամոյի շրջանի Բասիկյանի սովխոզի կուսկոմիտեի քարտուղար, պրոպագանդիստ Խ. ՀԱԿՈԲՅԱՆԻ նամակից*

ԵՐԿՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ զարգացման արագացման կոնցեպցիան, որը մշակվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում և հավանության արժանացավ ՍՄԿԿ XXVII համագումարում, դրված է ընթացիկ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի պլանային խնդիրների հիմքում: Արագացում ամենից առաջ նշանակում է տնտեսական աճի տեմպերի բարձրացում, գիտատեխնիկական առաջադիմության, էկոնոմիկայի, աշխատանքի կառավարման, կազմակերպման ու խթանման արդյունավետ ձևերի կառուցվածքային վերափոխումների հիման վրա արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացում:

Սակայն արագացումը չի վերաբերում միայն տնտեսական վերափոխումներին: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարին տրված Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, արագացումը նախատեսում է նաև սոցիալական ակտիվ քաղաքականության իրականացում, սոցիալիստական արդարության սկզբունքի հետևողական հաստատում, հասարակական հարաբերությունների կատարելագործում, քաղաքական և գաղափարախոսական ինստիտուտների աշխատանքի ձևերի ու մեթոդների նորացում, սոցիալիստական դեմոկրատիայի խորացում, իներցիայի, լճացման ու պահպանողականության, այն ամենի վճռական հաղթահարում, ինչը կասեցնում է հասարակական առաջադիմությունը: «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը,— համագումարում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— մեր բոլոր՝ մոտակա ու հեռանկարային, տնտեսական ու սոցիալական, քաղաքական ու գաղափարախոսական, ներքին և արտաքին պրոբլեմների բանալին է: Միայն այդ ճանապարհով կարող է և պետք է ձեռք բերվի սովետական հասարակության որակական նոր վիճակը» (**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցումը,** «Հայաստան» հրատ., 1986, էջ 36):

Արագացման կոնցեպցիան արտահայտվում է նաև կապիտալ ներդրումների աճի մեջ: Նախատեսված է տասներկուերորդ հնգամյակում կապիտալ ներդրումներն ավելացնել 23,6 տոկոսով՝ 1981—1985 թթ. 15,4 տոկոսի դիմաց: Կապիտալ ներդրումների բացարձակ աճը կկազմի 190 **մլրդ** ռուբլի՝ նախորդ հնգամյակի 107 **մլրդ** ռուբլու փոխարեն: Եվ դա ինքնանպատակ չէ:



Նյութական բարիքների մշտական և հարաճուն արտադրությունը հասարակության կյանքի հիմքն է: Դա նշանակում է, որ հասարակական արդյունքի որոշակի և աճող մասը ամեն տարի պետք է ուղղվի արտադրության մասշտաբների մեծացմանը: Բանն այն է, որ մշտապես ավելանում է բնակչության թիվը, աճում են մարդկանց պահանջմունքները: Մյուս կողմից, ընդլայնված վերարտադրության պրոցեսը առաջին հերթին ապահովվում է տեխնիկական առաջադիմության շնորհիվ, որի համար անհրաժեշտ են լրացուցիչ միջոցներ:

Այդ ամենը հատուկ են բոլոր արտադրաեղանակներին: Սակայն, դրա հետ մեկտեղ, ամեն մի հասարակարգում կուտակումը ձեռք է բերում յուրահատուկ բովանդակություն: Սոցիալիստական կուտակումը արմատապես տարբերվում է կապիտալիստականից: Ելնելով աշխատավորների բարեկեցության բարձրացման և վերարտադրության արագացման խնդիրներից՝ սոցիալիզմը պահանջում է ապահովել կուտակման բարձր ու կայուն տեմպեր: Ընդլայնված վերարտադրության արագ տեմպերը թելադրում են նաև համաշխարհային երկու սիստեմների տնտեսական մրցությամբ, սոցիալիստական երկրների պաշտպանական հզորության ամրապնդմամբ:

Սոցիալիզմի ժամանակ կուտակման մյուս առանձնահատկությունն այն է, որ այդ նպատակին ուղղվող ռեսուրսները պատկանում են ամբողջ հասարակությանը: Կուտակման շնորհիվ մեծացված արդյունքը ևս հասարակական սեփականություն է և պատկանում է իրենց՝ աշխատավորներին: Բացի դրանից, սոցիալիզմի պայմաններում կուտակվող ռեսուրսները ձևավորվում են պլանաչափորեն:

Այդ պրոցեսում ընդլայնված մասշտաբներով վերարտադրվում են նաև սոցիալիստական արտադրական հարաբերությունները: Սոցիալիստական կուտակումը ամուր հիմքեր է ստեղծում կոլեկտիվիզմի համար, նպաստում ընկերական համագործակցության և փոխադարձ օգնության զարգացմանն ու ամրապնդմանը:

Ազգային եկամուտը նյութական արտադրության ոլորտում նոր ստեղծված արժեքն է կամ տարեկան հասարակական ամբողջական արդյունքի դրան համապատասխանող մասը՝ բնեղեն ձևով: Սոցիալիզմի ժամանակ ազգային եկամուտը մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման և արտադրության մշտական ընդլայնման միակ աղբյուրն է: Որքան մեծ է ազգային եկամուտը, այնքան ավելի լայն հնարավորություններ են ստեղծվում ժողովրդի բարեկեցության բարձրացման և էկոնոմիկայի բազմակողմանի զարգացման համար:

Սովետական Միությունում ազգային եկամուտը մշտապես ավելանում է. միայն վերջին քառորդ դարում այն աճել է գրեթե չորս անգամ: Երկրի ազգային եկամտի նշանակալի աճ է նախատեսված առաջիկա տարիներին: Միայն տասներկուերորդ հնգամյակում այն կավելանա 124 **մլրդ** ռուբլով՝ տասնմեկերորդ հնգամյակի 79 **մլրդ** ռուբլու աճի դիմաց: Նույն ժամանակամիջոցում նախատեսված է Հայկական ՍՍՀ-ում ազգային եկամուտն ավելացնել 26 տոկոսով և հասցնել 8.015 **մլն** ռուբլու, որը 1.653 **մլն** ռուբլով ավելի է, քան նախորդ հնգամյակում ձեռք բերվածը:

Սոցիալիզմի ժամանակ բացառվում է ազգային եկամտի անհատական սպառումը կամ դրա օգտագործումը զուտ անձնական ոլորտում: Նման դեպքում սոցիալիստական հասարակությունը չէր ունենա ժողովրդական տնտեսությունը զարգացնելու և արտադրությունն ընդլայնելու հնարավորություն:

Հասարակությունն իր արտադրած ամբողջական արդյունքից լրիվ փոխհատուցում է հիմնական ֆոնդերի մաշվածքը և արտադրության պրոցեսում ծախսված աշխատանքի միջոցները: Ընդ որում անհրաժեշտ արդյունքը լրիվ ծախսվում է աշխատուժի վերարտադրության, նրա որակավորման, արտադրության աշխատողների բարեկեցության բարձրացման համար: Ուստի կուտակումը կարող է իրականացվել միայն հավելյալ արդյունքի հաշվին, որը սոցիալիզմի ժամանակ չի հակադրվում անհրաժեշտ արդյունքին: Ահա թե ինչու սոցիալիստական հասարակության ազգային եկամուտը բաժանվում է երկու ֆոնդի՝ կուտակման և սպառման:

Ազգային եկամտի կուտակվող մասն օգտագործվում է սոցիալիստական արտադրության զարգացման, ռեզերվների ստեղծման և ոչ արտադրական ոլորտի ֆոնդի ընդլայնման համար: Կուտակման պրոցեսը միաժամանակ ընդլայնված վերարտադրության ֆոնդի հաշվին էկոնոմիկայի հետագա զարգացման համար անհրաժեշտ լրացուցիչ արտադրության միջոցների ստեղծման պրոցես է:

Սոցիալիստական կուտակման արժեքային աղբյուրը գլխավորապես ազգային եկամտի այն մասն է, որն առաջնային բաշխման ժամանակ հանդես է գալիս հասարակության զուտ եկամտի ձևով: Դրա մեջ մտնում են շահույթը, շրջանառության հարկը, կոլտնտեսությունների զուտ եկամուտը և սոցիալիստական ձեռնարկությունների այլ կուտակումները:

Զուտ եկամուտը նյութական արտադրության աշխատողների կողմից ստեղծված հավելյալ արդյունքի արժեքի իրացման ձևն է: Սոցիալիստական կուտակման ընթացքում հավելյալ արդյունքի արժեքի գերակշռող մասը մտնում է պետական բյուջե և, ամբողջ էկոնոմիկայի զարգացման խնդիրներին համապատասխան, պլանաչափ բաշխվում արտադրության ճյուղերի, միութենական հանրապետությունների ու տնտեսական շրջանների միջև:

Ի տարբերություն կապիտալիզմի, որի ժամանակ կուտակման աղբյուրներից մեկը թույլ զարգացած, գաղութային ու կախյալ երկրների շահագործումն է, սոցիալիստական կուտակումը տեղի է ունենում գլխավորապես տվյալ երկրի սեփական ռեսուրսների հաշվին: Արդի պայմաններում, սոցիալիստական շինարարությունը նոր սկսած երկրներում, կուտակման ֆոնդը գոյանում է նաև առավել զարգացած սոցիալիստական երկրների օգնությամբ:

Սոցիալիզմի ժամանակ կուտակման ինտենսիվությունը և դրսևորման առանձնահատկությունները, ժողովրդական տնտեսության զարգացման տարբեր փուլերում կուտակման ֆոնդի աղբյուրների ձևավորման կազմի ու կառուցվածքի յուրահատկությունները բխում են տվյալ կոնկրետ պատմական պայմաններում հասարակության առջև դրված խնդիրներից: Ազգային եկամտի առաջնային բաշխման համամասնությունների փոփոխություններին զուգընթաց փոխվում է զուտ եկամտի առանձին ձևերի դերը կուտակման ֆոնդի կազմավորման մեջ:

Նախապատերազմյան ժամանակաշրջանում և ետպատերազմյան առաջին տարիներին մեր հասարակության զուտ եկամտի հիմնական մասը հանդես էր գալիս շրջանառության հարկի ձևով: Այն գերազանցում էր շահույթի գումարը (1940 թ. 3,2, իսկ 1950 թ.՝ 4,5 անգամ): Սակայն 60-ական թվականների կեսերին շահույթն արդեն գրեթե հավասարվեց շրջանառության հարկի բացարձակ մեծությանը և այնուհետև գերազանցեց դրան: Ո՞րն էր դրա պատճառը:

Ինդուստրացման, ժողովրդական տնտեսության վերականգնման ու վերակառուցման, ետպատերազմյան առաջին հնգամյակների տարիներին շատ ճյուղերում, մանավանդ ծանր արդյունաբերության մեջ, շահույթը չէր ծածկում կուտակման ռեսուրսների նկատմամբ պահանջարկը: Դրա հետևանքով կուտակումը տեղի էր ունենում գլխավորապես առանձին ճյուղերից գանձվող շրջանառության հարկի և պետական բյուջեի շահույթի մի մասի, ինչպես նաև կապիտալ ներդրումների ֆինանսավորման ու կենտրոնացված եկամտի շրջանառու միջոցների աճի հաշվին:

Հետագայում, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, արտադրության շահութաբերության բարձրացման և ազգային եկամուտը գների մեխանիզմի միջոցով ճյուղերի միջև վերաբաշխման մասշտաբների փոփոխության շնորհիվ, զուտ եկամտի իրացումը մոտեցավ ճյուղերում ստեղծված հավելյալ արդյունքի մեծությանը: Դա հնարավորություն տվեց բարձրացնելու ձեռնարկությունների և ճյուղերի սեփական միջոցների դերը կուտակման ֆոնդի ձևավորման գործում: Սկսած 1966 թվականից՝ ձեռնարկություններում ստեղծվեց արտադրության զարգացման ֆոնդ, որը գոյանում է ստացված շահույթի մի մասից և ամորտիզացիոն մասհանումներից: ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներին համապատասխան, արտադրության զարգացման ֆոնդը վերածվեց վերակառուցման և տեխնիկական վերազինման ֆոնդի:

Ներկայումս մեր երկրում ակտիվորեն կատարելագործվում է տնտեսական մեխանիզմը, որն ուղղված է նաև կուտակման ֆոնդի ձևավորման բոլոր աղբյուրների գիտականորեն հիմնավորված հարաբերակցությունների սահմանմանը: Սոցիալիզմի պլանաչափ և համակողմանի կատարելագործման պայմաններում կուտակման ֆոնդի կազմավորման գործում վճռական նշանակություն ունի պետական բյուջեն՝ սոցիալիստական պետության ֆինանսական համակարգի գլխավոր օղակը: Կապիտալ ներդրումների ֆինանսավորման և շրջանառու միջոցների աճի գործում կարևոր դեր ունի նաև վարկը: Կուտակման ռեսուրսների հիմնական մասը պետության ձեռքին



կենտրոնացնելու միջոցով ապահովվում են ամբողջ ժողովրդական տնտեսության, երկրի ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի շահերին համապատասխան դրանք ըստ ճյուղերի և ըստ տնտեսական շրջանների ճիշտ բաշխումը և արտադրության համամասնական զարգացումը:

Վերջին տարիներին կուտակման հնարավորությունները զգալիորեն մեծացել են նաև կոլտնտեսություններում: Այդ բանին նպաստել են կոլտնտեսային արտադրության և աշխատանքի արտադրողականության աճը, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցումը, դրանց պետական մթերման գների բարձրացումը: Միայն Հայկական ՍՍՀ-ում 1984 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունների համախառն եկամուտն ավելացավ ավելի քան 1,5 անգամ և 114,9 **մլն** ռուբլուց հասավ 216,3 **մլն** ռուբլու (Народное хозяйство Армянской ССР в 1984 г., Ереван, 1985, стр. 146): Դրա շնորհիվ ամրապնդվեց կոլտնտեսությունների նյութատեխնիկական բազան, զգալի միջոցներ ներդրվեցին նոր շինարարության և գյուղատնտեսական տեխնիկայի ձեռքբերման համար:

Անշուշտ, սոցիալիստական կուտակման գլխավոր աղբյուրը ձեռնարկությունների եկամուտներն են, որոնց արագ աճը հնարավորություն է տալիս զգալիորեն կրճատելու կուտակման ֆինանսավորման գործում բնակչության միջոցների բաժինը: Արդեն 1957 թվականին դադարեցվեց բնակչության շրջանում պետական փոխառությունների իրացումը, իսկ երկու տասնամյակ անց սկսվեց դրանց մարումը: Տասներկուերորդ հնգամյակում նախատեսվում է վերացնել ամսական մինչև 80 ռուբլի աշխատավարձից գանձվող հարկերը, ինչպես նաև դրանք նվազեցնել ամսական 80—100 ռուբլի աշխատավարձից: Նախատեսվում է հետագայում կուտակումը լրիվ իրականացնել սոցիալիստական ձեռնարկությունների եկամուտների հաշվին:

Սոցիալիստական հասարակարգում կուտակման չափերը տարերայնորեն ու կամայաբար չեն որոշվում: Սոցիալիստական կուտակման օբյեկտիվ տնտեսական օրենքի բովանդակությունը հանգում է այն բանին, որ կուտակման և արտադրության աճը զուգակցվում է հասարակական սեփականության զարգացմանն ու ամրապնդմանը և այդ հիման վրա՝ ժողովրդական բարեկեցության մշտական բարձրացմանը, մարդու համակողմանի զարգացմանը: Այդ պատճառով մեր կուսակցությունը խնդիր է դրել կուտակման և սպառման միջև սահմանել ու պահպանել այնպիսի հարաբերակցություն, որը միաժամանակ տա և՛ ընդլայնված վերարտադրության ապահովման, և՛ սպառման մշտական աճի հնարավորություն:

Առանց արտադրողական ուժերի զարգացման, առանց կուտակման՝ անհնարին է բարձրացնել ժողովրդի բարեկեցության մակարդակը: Մյուս կողմից, արտադրության զարգացումը, նրա աճի տեմպերի արագացումն անհնարին է առանց աշխատանքի նյութական խթանման ուժեղացման: Դրա հետ միասին, կուտակման և սպառման ճիշտ զուգակցումը հակասական պրոցես է. դրանցից մեկի ավելացումը ենթադրում է մյուսի փոքրացում: Այդ հակասությունը սոցիալիստական հասարակարգում հակամարտ բնույթ չի կրում և լուծվում է արտադրության զարգացման տեմպերի արագացման ուղիով:

Այդուհանդերձ, ազգային եկամտից որքա՞ն պետք է հատկացնել կուտակմանը և որքա՞ն՝ սպառմանը: Դա որոշվում է կուտակման նորմայով, որը ամբողջ ազգային եկամտի նկատմամբ կուտակման ֆոնդի հարաբերությունն է՝ արտահայտված տոկոսներով: Սոցիալիստական հասարակարգում կուտակման նորման կախված է հավելյալ արդյունքի ծավալից և այնպիսի գործոններից, ինչպիսիք են ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերը, արտադրության տեխնիկական մակարդակը, նրա արդյունավետությունը, այն խնդիրների բնույթը, մասշտաբն ու բարդությունը, որոնք տվյալ ժամանակաշրջանում որոշում են էկոնոմիկայի զարգացումը:

Երկար ժամանակ սովետական էկոնոմիկան զարգանում էր կուտակման բարձր նորմայի պայմաններում: Կապիտալ ներդրումներն ուղղվում էին գլխավորապես ծանր արդյունաբերության և տրանսպորտի զարգացմանը, որը սովետական պետությանը հնարավորություն տվեց հաջողությամբ լուծելու ինդուստրացման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինման և երկրի պաշտպանունակության ամրապնդման բարդ խնդիրները:

Վերջին տասնամյակում, ծանր արդյունաբերության ընդլայնման հետ միասին,

շատ միջոցներ էին հատկացվում գյուղատնտեսության և ժողովրդական սպառման առարկաներ արտադրող արդյունաբերության զարգացմանը: Դրանով իսկ ազգային եկամտի մեջ կուտակման ֆոնդի բաժինը գնալով նվազում էր: Այսպես, եթե 1966—1970 թթ. այդ ֆոնդին հատկացվեց ազգային եկամտի 27 տոկոսը, ապա 1975—1985 թթ.՝ 20 տոկոսը: Թերևս հենց դա էր այն պատճառներից մեկը, որ 70-ական թվականներին և 80-ական թվականների սկզբին երկրում զգալիորեն նվազեցին տնտեսական աճի տեմպերը:

Այժմ, ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած տնտեսական ստրատեգիային համապատասխան, կուտակման և սպառման հարաբերակցությունը արմատապես կատարելագործվում է: Նախատեսված է կապիտալ ներդրումների բացարձակ աճը տասներկուերորդ հնգամյակում հասցնել 190 **մլրդ** ռուբլու՝ նախորդ հնգամյակի 107 **մլրդ-ի** դիմաց: Այդ նպատակով կուտակման ֆոնդի բաժինը 1985 թվականի 25,9 տոկոսից 1990 թվականին պետք է հասցնել մինչև 27,6 տոկոսի:

Երկրում մշակվել է գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման ընդարձակ ծրագիր, որի իրագործման համար հատկացվող կապիտալ ներդրումները ընթացիկ հնգամյակում կավելանան 70 տոկոսով, իսկ արտադրական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի մեջ դրանց բաժինը հնգամյակի վերջին կանցնի 50 տոկոսից: Այդ ուղղությամբ մեծ աշխատանք կկատարվի նաև Հայկական ՍՍՀ-ում: Նախատեսված է հնգամյակի տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացմանը հատկացվող պետական կապիտալ ներդրումները հասցնել 8.318 միլիարդ ռուբլու կամ անցած հնգամյակի համեմատությամբ ապահովել 34,9 տոկոս աճ, այդ թվում՝ արդյունաբերության զարգացման համար կապիտալ ներդրումները կավելանան շուրջ 1,7 անգամ:

Ազգային եկամտի կառուցվածքում կուտակման ֆոնդի ավելացումը հնարավորություն կտա հաղթահարելու կապիտալ ներդրումների աճի տեմպերի և բացարձակ հավելաճի նվազման բացասական միտումը, որը երկրում տեղ էր գտել վերջին տասնամյակում: Ահա թե ինչու կուտակման ֆոնդի բաժնի մեծացումը կուսակցությունը համարում է ներկա ժամանակաշրջանի հիմնական խնդիրներից մեկը: Նախատեսվում է ազգային եկամտի մեջ կուտակման բաժինը կայունացնել:

Սոցիալիզմի կատարելագործման արմատական հարցերից մեկը կուտակման արդյունավետության բարձրացումն է: Այդ նպատակով ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց կուտակման ֆոնդի բաժինը մեծացնել հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման հետ մեկտեղ: Դա հնարավորություն կտա զգալիորեն ավելացնել նաև սպառման ֆոնդի բացարձակ չափերը:

Կուտակման արդյունավետության բարձրացման հարցերը լայնորեն քննարկվեցին նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումում: «Պլանով նախատեսված բարձր բնագծերը,— պլենումում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— պահանջեցին նորովի մոտենալ տնտեսական աճի աղբյուրների որոշմանը: Այստեղ որոշիչը գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա արտադրության արդյունավետության ցուցանիշների արմատական բարելավումն է»: Դա պահանջում է կատարելագործել ժողովրդական տնտեսության ճյուղերի կառուցվածքը, բարելավել արտադրողական ուժերի տեղաբաշխումը, ավելի լրիվ օգտագործել կուտակման նպատակներին հատկացված ռեսուրսները:

Նախկինում, տարիներ շարունակ, մեր երկրում կապիտալ ներդրումներն աճել են ավելի արագ, քան ազգային եկամուտն ու աշխատանքի արտադրողականությունը: 1958—1980 թթ. ֆոնդահատույցը, այսինքն՝ դրամական արտահայտությամբ հիմնական ֆոնդերի արժեքի մեկ ռուբլու հաշվով արտադրանքի ծավալը, 48 կոպեկից իջավ 31 կոպեկի: Եթե նոր ֆոնդերի հատույցը 1958 թվականին կազմել էր 52 կոպեկ, ապա 1980 թվականին՝ ընդամենը 16 կոպեկ: Վիճակը գրեթե նույնն էր նաև տասնմեկերորդ հնգամյակի տարիներին: Պատահական չէ, որ ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց հաղթահարել ֆոնդահատույցի նվազման տեղ գտած միտումը և հետագայում հասնել այդ հատույցի բարձրացման:

Ընթացիկ հնգամյակում պետք է իրականացվի կուտակման արդյունավետության բարձրացման միջոցառումների ծավալուն համալիր: Նշված միջոցառումները ներառում են գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, տնտե-



սական մեխանիզմի կատարելագործումը, էկոնոմիկայի ինտենսիվացումը, հիմնական ֆոնդերի գործարկման ժամկետների կրճատումը, ձեռնարկությունների տեխնիկական վերազինումն ու վերակառուցումը, խնայողության ռեժիմի ուժեղացումը, կառավարման բարելավումը և այլն: Այդ և մյուս խնդիրների լուծման գործում կուսակցությունը մեծ դեր է հատկացնում մարդկային գործոնի ակտիվացմանը:

Ազգային եկամտի մյուս մասն օգտագործվում է աշխատավորների նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման համար: Դա սպառման ֆոնդն է, որը գոյանում է ինչպես անհրաժեշտ արդյունքի, այնպես էլ հավելյալ արդյունքի՝ ոչ արտադրական կարիքների համար ծախսվող մասի, հաշվին: Այդ ֆոնդը ներառում է նաև բնակչության անձնական սպառումը, սպասարկող հիմնարկությունների նյութական ծախսերը, ինչպես նաև գիտական հաստատությունների և կառավարման ապարատի ծախսերը:

Սպառման ֆոնդն արտահայտում է տարվա ընթացքում փաստացի սպառված կամ բնակչության ու ոչ արտադրական ոլորտի հիմնարկությունների ձեռք բերած բոլոր սպառողական բարիքների արժեքը, այսինքն՝ նյութաիրային ձևով սպառումը:

Ժողովրդական սպառման անշեղ աճը սոցիալիզմի օրինաչափությունն է: Բնակչության կողմից նյութական բարիքների սպառման դինամիկան բնութագրվում է նրա եկամուտների աճով: Վերջին քառորդ դարում մեր երկրում բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտներն աճել են 2,6 անգամ: Նոր, զգալի աճ է նախատեսված տասներկուերորդ հնգամյակում: Բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը կավելանա գրեթե 15 տոկոսով և 1990 թվականին կհասնի ամսական 218 ռուբլու: Կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը կաճի միջին հաշվով 18 տոկոսով: Նրանց իրական եկամուտները, հաշվի առնելով նաև անձնական օժանդակ տնտեսությունից ստացվող մուտքերը, փաստորեն կհավասարվեն բանվորների ու ծառայողների եկամուտներին: Աշխատանքի վարձատրության բարձրացման և կատարելագործման կուսակցության կուրսը կուղեկցվի անաշխատ եկամուտների կորզման դեմ անհաշտ պայքարով:

Աշխատավորների բարեկեցության գործում մեծ դեր են խաղում սպառման հասարակական ֆոնդերը, որոնց միջոցները բնակչությանը հատկացվում են անվճար կամ արտոնյալ պայմաններով: Այդ ֆոնդերի հաշվին պահվում են հանրակրթական դպրոցները, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները, կադրեր պատրաստող մյուս հաստատությունները, հիվանդանոցները, պոլիկլինիկաները, առողջապահական մյուս հիմնարկները, մանկապարտեզներն ու մանկամսուրները, կուլտուրայի օջախները: Սպառման հասարակական ֆոնդերից բնակչությանը արտոնյալ պայմաններով կամ անվճար տրամադրվում են սանատորիաների, հանգստյան տների, պիոներական ճամբարների և այլ ուղեգրեր: Նույն ֆոնդերի հաշվին վճարվում են կենսաթոշակներ, կրթաթոշակներ, նպաստներ և այլն: Նախատեսված է տասներկուերորդ հնգամյակում սպառման հասարակական ֆոնդերից բնակչությանը տրվող վճարումների ու արտոնությունների ծավալը մեծացնել 25 տոկոսով:

Սոցիալիստական հասարակությունը, արտադրության ամբողջ պրոցեսը ենթարկելով ժողովրդի բարեկեցության աճին, ըստ էության ազգային եկամուտն ամբողջովին ի սպաս է դնում մարդկանց պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը:

# ԼԵՌՆԱՅԻՆ ՇՐՋԱՆՆԵՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ

**Է. ԲԱԲԱՅԱՆ**
Աշխարհագրական գիտությունների թեկնածու
**Ա. ՄԻՐԶԱԽԱՆՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԸ և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը հանրապետության բոլոր սոցիալ-տնտեսական ռեգիոնների համաչափ զարգացումը և աշխատանքային ազատ ռեսուրսների արդյունավետ օգտագործումն ապահովելու համար հետևողականորեն վարում են տերիտորիալ համամասնությունների կատարելագործման և արտադրողական ուժերի տեղաբաշխման բարելավման կուրս:

Այդ խնդրի հաջող իրագործումը անխզելիորեն առնչվում է հանրապետության լեռնային և նախալեռնային շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հարցերի լուծման հետ: Նշված շրջաններում արդյունաբերական արտադրության տեղաբաշխման ու զարգացման հարցերը վերջին տարիներին մշտապես գրավել են հանրապետության գիտնականների և տնտեսավարների ուշադրության կենտրոնում: Դրանք ամենայն լրջությամբ առաջին պլան են մղվում առանձնապես ներկայումս, երբ այդ գործում կուտակված որոշակի փորձը պահանջում է համակողմանի գիտական վերլուծություն և տնտեսագիտական գնահատում:

Արդի փուլում առանձնապես հրատապ են թեթև արդյունաբերության տեղաբաշխման ու զարգացման պրոբլեմները, մասնավորապես, արտադրության արդյունավետության բարձրացման և աշխատանքի որակի բարելավման ռեզերվներն ի հայտ բերելը:

Ինչպես հայտնի է, լեռնային և նախալեռնային շրջանների սոցիալական ու տնտեսական զարգացման մակարդակի բարձրացման նպատակով 70-ական թվականներին սկսվեց դրանց ինտենսիվ ինդուստրացումը, որն արտահայտվում էր փոքր քաղաքներում, շրջկենտրոններում ու գյուղերում բազմապիսի արդյունաբերական օբյեկտների՝ ինքնուրույն ձեռնարկությունների, առանձին մասնաճյուղերի տեղաբաշխմամբ:

Վերջին տասնհինգ տարիներին նրանցում սկսել են գործել հաստոցաշինական, ռադիո և էլեկտրատեխնիկական, քիմիական, սննդի, թեթև արդյունաբերության և այլ ճյուղերի 200-ից ավելի ձեռնարկություններ, մի բան, որը զգալիորեն խթանել է այդ շրջանների արդյունաբերական արտադրության զարգացումը: Այսպես, 1985 թվականին նշված շրջաններում արդյունաբերության համախառն արտադրանքը, 1970 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան 5 անգամ, այն դեպքում, երբ ամբողջ հանրապետության մասշտաբով այդ ցուցանիշը կազմել է 2,7 տոկոս: Որոշ շրջաններում (Վարդենիս, Մարտունի, Սիսիան, Սպիտակ, Ապարան) արդյունաբերական արտադրության միջին տարեկան տեմպերը 3—6 անգամ գերազանցեցին միջին հանրապետական մակարդակը: Դրա հետևանքով հանրապետության արդյունաբերական արտադրանքի ընդհանուր արտադրության մեջ լեռնային և նախալեռնային շրջանների արտադրանքի բաժինը զգալիորեն աճեց և 1985 թվականին գրեթե կրկնապատկվեց (1970 թ. 7,3 տոկոսի դիմաց կազմեց 13,6 տոկոս):



Արդյունաբերական աճի այդպիսի բարձր տեմպեր են ապահովվում ամենից առաջ թեթև արդյունաբերության արագ զարգացմամբ: Վերջին մեկուկես տասնամյակում հանրապետության լեռնային ու նախալեռնային շրջաններում ստեղծվեցին թեթև արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերի 100-ից ավելի նոր ձեռնարկություններ ու մասնաճյուղեր: Դրա շնորհիվ հանրային արտադրության մեջ լրացուցիչ ընդգրկվեց 15 հազար մարդ, և շրջաններում տեղաբաշխված արդյունաբերական ձեռնարկությունները 1985 թվականին տվեցին ճյուղի ընդհանուր համախառն արտադրանքի մեկ հինգերորդ մասը:

Թեթև արդյունաբերության ձեռնարկությունների տեղաբաշխումը պայմանավորված է, նախ և առաջ, հանրապետությունում առավել աշխատատար և նվազ նյութաէներգա- ու ջրատար արտադրությունների առաջընթաց զարգացման դիրքորոշմամբ, որը բխում է նվազագույն նյութական ծախսումներով ազատ բնակչությանը զբաղեցնելու անհրաժեշտությունից:

Երկրորդ, այն կանխորոշված է արդյունաբերական արտադրությունը Երևանից և մյուս խոշոր արդյունաբերական կենտրոններից առավելապես լեռնային շրջանների փոքր քաղաքներ ու գյուղեր փոխադրելու քաղաքականությամբ, որը նպատակ է հետապնդում կարգավորելու քաղաքակենտրոնացման պրոցեսը, կասեցնելու բնակչության արտահոսքը, ապահովելու աշխատանքային ռեսուրսների առկայության ու զբաղվածության հաշվեկշռվածությունն ըստ առանձին շրջանների:

Նշված շրջաններում առկա են թեթև արդյունաբերությունը զարգացնելու մի շարք հնարավորություններ: Դրանցից ամենակարևորներն են՝ կապիտալ ներդրումների նվազ պահանջը, շատ արտադրություններում ոչ բարդ տեխնիկայի ու տեխնոլոգիայի կիրառումը, հումքի և սարքավորումների փոքր ծավալները, կանանց աշխատանքային ազատ ռեսուրսների առկայությունը, իսկ որոշ դեպքերում նաև տեղի բնակչության շրջանում ազգային հարուստ ավանդույթների (օրինակ, գորգագործությամբ զբաղվելու) գոյությունը:

Լեռնային շրջաններում թեթև արդյունաբերության տեղաբաշխման պրոցեսն առանձնապես աշխուժացավ արտադրական միավորումների ստեղծումից հետո: Օրինակ, կարի ու տրիկոտաժի արդյունաբերության մասնաճյուղերի և արտադրական տեղամասերի թիվը վերջին ժամանակներս անցել է 50-ից:

Սակայն, չնայած լեռնային և նախալեռնային շրջաններում թեթև արդյունաբերության ձեռնարկությունների տեղաբաշխման ու զարգացման օբյեկտիվ պայմանների առկայությանը, կան նաև դրանց զարգացմանը խոչընդոտող որոշակի դժվարություններ:

Լինելով առավելապես գյուղատնտեսական շրջաններ՝ հեռու քաղաքներից ու տրանսպորտային հանգույցներից, դրանք երկար ժամանակ մի կողմ են մնացել արդյունաբերական զարգացումից: Դեռ ավելին, դրանց համար նույնիսկ ավանդական հանդիսացող գյուղատնտեսական արտադրությունը անբարենպաստ բնակլիմայական պայմանների պատճառով անհամեմատ նվազ արդյունավետ է, քան հարթավայրային շրջաններում:

Արդյունաբերական արտադրության բացակայությունը և գյուղատնտեսության ոչ բարձր արդյունավետությունը լեռնային շրջանների տնտեսապես ետ մնալու և որպես դրա բնական հետևանք՝ տեղի բնակչության շրջանում արտադրության ցածր կուլտուրայի պատճառ դարձան:

Պատմականորեն ստեղծված նմանօրինակ անբարենպաստ իրավիճակում ինդուստրացման կուրսի գործնական իրացումն օբյեկտիվորեն բարդանում էր: Ուստի և թեթև արդյունաբերությունն այդ շրջաններում սակավ արդյունավետ էր, սակավ շահութաբեր: Այսպես, Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության տվյալներով, այդտեղ շատ ձեռնարկություններ աշխատում են վնասով: Վնասների գումարը 1980 թվականին կազմում էր 1,5, իսկ 1985-ին՝ արդեն 5—6 **մլն** ռուբլի:

Արտադրության նվազ արդյունավետությունը պայմանավորված է ոչ միայն նշված ավանդական հանգամանքներով, այլև աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի ցածր մակարդակով:

Վիճակագրական տվյալներով, զգալի խզում է դիտվում հարթավայրային ու լեռնային շրջաններում ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականության

մակարդակների միջև: 1985 թվականին այդ հարաբերակցությունը կազմում էր 2 : 1: Զգալի տարբերություններ են բացահայտվում առանձին ճյուղերի համապատասխան տվյալները համեմատելիս, ընդ որում դրանք առավել շոշափելի են բրդե (2,6 անգամ) և բամբակե գործվածքների (2,3 անգամ) արտադրության մեջ:

Լեռնային և նախալեռնային շրջանների ձեռնարկություններում անբավարար է նաև արտադրանքի որակը, ինչի մասին վկայում են անորակ, խոտան արտադրանքը վերադարձնելու համար նրանց վճարած տուգանքները: Օրինակ, Սովետաշենի տրիկոտաժի արտադրական միավորման 1985 թվականին վճարած բոլոր տուգանքների (սորտայնության իջեցման ու ցածր որակի արտադրանքի մատակարարման համար), ինչպես նաև սպառողի կողմից միավորմանը վերադարձված արտադրանքի ամբողջ քանակության ավելի քան երկու երրորդը բաժին է ընկել Թալինի տրիկոտաժի փաբրիկային ու Եղնիկ, Զառինջա գյուղերում գործող նրա մասնաճյուղերին, այն ժամանակ, երբ միավորման համախառն արտադրանքի արտադրության մեջ նրանց արտադրանքի տեսակարար կշիռը կազմել է 17 տոկոս:

Վիճակն ավելի բարվոք չէ լեռնային շրջաններում գործող մյուս ձեռնարկություններում ու մասնաճյուղերում, որոնցից շատերում նույնպես ցածր են արտադրության արդյունավետությունը և թողարկվող արտադրանքի որակը: Այդ պատճառով, մի կողմից, արգելակվում է նշված շրջանների արդյունաբերական զարգացումը, մյուս կողմից, դանդաղում ամբողջ ճյուղի աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը:

Այդ շրջանների թեթև արդյունաբերության ձեռնարկությունների տնտեսական գործունեության վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանց ետ մնալու առավել ծանրակշիռ պատճառներն են՝ արդյունաբերական օբյեկտների հաճախ ոչ ռացիոնալ տեղաբաշխումն ըստ առանձին շրջանների, արդյունաբերական կենտրոնների ձեռնարկությունների համեմատությամբ արտադրության տեխնիկական թույլ հագեցվածությունը, արտադրության, բանվորների աշխատանքի ու կենցաղի անբավարար կազմակերպումը, կադրերի (հատկապես բանվորների) որակավորման և արտադրության կուլտուրայի ցածր մակարդակը:

Լեռնային շրջաններում արդյունաբերության տեղաբաշխման կուրսի իրագործումն սկսվեց փոքր-ինչ հապճեպորեն, առանց գիտականորեն հիմնավորված և նախապես մշակված համապատասխան ծրագրի: Փաստորեն գործը հանգեցվում էր այն բանին, որ ամեն տեղ, ուր հայտնաբերվում էին աշխատանքային ռեսուրսների ռեզերվներ և առկա շենքերի (նորոգման արհեստանոցների, կոլտնտեսային ֆերմաների, պահեստների և այլնի) օգտագործման հնարավորություններ, արտադրամիավորումները կազմակերպում էին մասնաճյուղեր և արտադրական տեղամասեր: Դրա հետևանքով միևնույն ձեռնարկության բազմաթիվ արտադրական օբյեկտներ ցրված են հանրապետության ողջ տարածքում: Գլխամասային փաբրիկաների ու մասնաճյուղերի միջև ընկած հեռավորությունը երբեմն հասնում է 200 կիլոմետրի (մեր հանրապետության համար դա զգալի տարածություն է): Այդ հանգամանքը բարդացնում է արտադրության արդյունավետ կառավարումը, միասնական կադրային քաղաքականության իրականացումը, օպերատիվ օգնություն ցույց տալու, հաշվառում կատարելու, վերահսկելու հնարավորությունը և այլն:

Նման պայմաններում, իհարկե, դժվար է բարձր մակարդակով լուծել ծառայությունների համակարգի, այդ թվում պրոֆեսիոնալ և նախադպրոցական մանկական հաստատությունների ցանցի, ճանապարհաշինության, տրանսպորտի, կապի զարգացման և ընդլայնման հարցերը, որոնցից մեծապես կախված է արդյունաբերական արտադրության արդյունավետությունը: Ծառայությունների համակարգի սակավզորության պատճառով ուժեղանում է նաև կադրերի հոսունությունը: Այսպես, օրինակ, Թալինի տրիկոտաժի փաբրիկայում ու Եղնիկ գյուղում գործող նրա արտադրական տեղամասում կատարված սոցիոլոգիական հետազոտությամբ պարզվել է, որ մարդկանց մոտ մեկ երրորդը աշխատանքից իր դուրս գալը պատճառաբանել է նախադպրոցական մանկական հիմնարկներում տեղերի (կամ պարզապես այդպիսի հիմնարկների) բացակայությամբ և տրանսպորտի անբավարար վիճակով (վերջինս նշել են մեծ մասամբ նրանք, ովքեր աշխատանքի են եկել հարևան գյուղերից և ավաններից):



Հավական է ասել, որ գյուղական վայրերում հազար բնակչի հաշվով 2,1 անգամ քիչ երեխաներ են ընդգրկված նախադպրոցական մանկական հիմնարկներում և 1,4 անգամ պակաս ծավալի կենցաղային ծառայություններ են ցույց տրվում, քան քաղաքներում: Այդ տարբերությունն ավելի զգալի է հանրապետության լեռնային գյուղերի և խոշոր քաղաքների միջև:

Սպասարկման ոլորտի թերություններն առանձնապես անդրադառնում են կանանց հասարակական-արտադրական և ընտանեկան-կենցաղային պայմանների վրա և հաճախ նրանց համար աշխատանքը թողնելու պատճառ դառնում: Այդ հանգամանքը նույնպես բացասաբար է ազդում հետազոտվող ձեռնարկությունների գործունեության արդյունքների վրա:

Լեռնային շրջաններում, արդյունաբերական արտադրության տեղաբաշխման հետ զուգահեռ, բնականաբար, պետք է ստեղծվի անհրաժեշտ սոցիալական ենթակառուցվածք: Այդ պահանջում է լրացուցիչ կապիտալ ներդրումներ, բայց դրանք կփոխհատուցվեն ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ:

Թեթև արդյունաբերության ձեռնարկությունների ոչ նպատակահարմար տեղաբաշխման մասին է խոսում և այն փաստը, որ հաճախ նույն վայրում գործում են միևնույն ճյուղերի, բայց տարբեր արտադրական միավորումների ենթակա փաբրիկաներ, մասնաճյուղեր և արտադրական տեղամասեր: Այսպես, Հրազդան քաղաքում փաբրիկաներ ունեն Երևանի տրիկոտաժի Մյասնիկյանի անվան և «Անուշ» միավորումները, Նաիրիի շրջանի երեք գյուղերում գործում են նույն ճյուղի երեք միավորումների մասնաճյուղեր:

Հաճախակի են նաև ոչ մեծ բնակավայրերում արդյունաբերության տարբեր, ոչ արտադրակից ճյուղերի ձեռնարկությունների տեղաբաշխման դեպքերը: Օրինակ, մի քանի փոքր քաղաքներում և ավաններում միաժամանակ գործում են և՛ տրիկոտաժի, և՛ գորգագործական, և՛ կոշիկի փաբրիկաներ՝ յուրաքանչյուրը 50—100 աշխատողով: Արտադրության թույլ համակենտրոնացման և մասնագիտացման նման պայմաններում չափազանց դժվար է ապահովել բարձր արդյունավետություն, մանավանդ որ բնակչությունը արդյունաբերական աշխատանքի փորձ չունի:

Լեռնային և նախալեռնային շրջաններում արդյունաբերության զարգացումը կաշկանդող պատճառներից է նաև արտադրության տեխնիկական հագեցվածության ցածր մակարդակը: 1980—1984 թվականներին թեև հանրապետության թեթև արդյունաբերության մեջ աշխատանքի ֆոնդազինվածությունն ընդհանուր հաշվով աճեց, բայց արդյունաբերական կենտրոնների և նշված շրջանների այդ ցուցանիշների տարբերությունը մեծ էր (114 տոկոս):

Վերլուծությունը ցույց է տվել, որ 1984 թվականին լեռնային շրջաններում թեթև արդյունաբերության ձեռնարկությունների ֆոնդազինվածությունը, ճյուղի համեմատությամբ, ցածր է եղել 1,7—4,1 անգամ, այդ թվում տրիկոտաժի ձեռնարկություններինը՝ 2—10, կոշիկինը՝ 1,9—6,1 անգամ:

Նման պատկեր դրսևորեց աշխատանքի էներգազինվածության ցուցանիշների վերլուծությունը: Ղափանի տրիկոտաժի փաբրիկայում աշխատանքի էներգազինվածությունը 1984 թվականին կազմում էր ճյուղի միջին մակարդակի 64, Գորիսի տրիկոտաժի արտադրական միավորումում՝ 71 տոկոս:

Հետևաբար, ոչ մեծ քաղաքներն ու գյուղերը նպատակահարմար է մասնագիտացնել մեկ-երկու տեսակի, ցանկալի է՝ հարակից, արտադրությունների գծով, որի շնորհիվ կբարելավվի արտադրության տեխնիկական զարգացման, փաբրիկաների նյութատեխնիկական մատակարարման, կադրերի պատրաստման, որակավորման բարձրացման և այլ հարցերի լուծումը: Ըստ որում, ավելի ճիշտ կլիներ յուրաքանչյուր միավորմանը եթե ոչ շրջան, ապա գոնե մի խումբ մոտակա գյուղեր և ավաններ կցել: Այս դեպքում առանձին միավորումների մասնաճյուղերը և արտադրական տեղամասերը կարելի կլիներ համակենտրոնացնել մեկ-երկու շրջանում, մի բան, որը կմեծացներ այդ շրջանների տնտեսական և սոցիալական զարգացման ժողովրդագրական, աշխարհագրական, ազգային-կենցաղային առանձնահատկություններն ավելի լիովին հաշվի առնելու հնարավորությունը, առանձնահատկություններ, որոնք մեծ ազդեցություն են գործում արտադրության կուլտուրայի, աշխատուժի

ձևավորման և օգտագործման, աշխատանքի արտադրողականության ու որակի բարձրացման վրա։

Ենավ պարտադիր չէ թեթև արդյունաբերության ձեռնարկություններ տեղաբաշխել առանց բացառության բոլոր լեռնային և նախալեռնային շրջաններում։ Այս առումով գործունեության լայն ասպարեզ է բացվում նաև հանրապետության պետագրոարդի համար, որը գյուղատնտեսության ինտենսիվացման, ինչպես նաև արդյունաբերության առանձին ճյուղերի զարգացման նպատակով կարող է և պետք է լայնորեն ծավալի պահածոների, երշիկի, ծխախոտի և վերամշակող այլ արտադրություններ։ Չէ որ նշված շրջանների ինդուստրացման կուրսն ուղղված է ոչ միայն գյուղական վայրերում ոչ մեծ ձեռնարկությունների տեղաբաշխման, այլև հանրային արտադրության կառուցվածքում արդյունաբերական և գյուղատնտեսական ճյուղերի օպտիմալ զուգակցման նպատակին, մի բան, որը կապահովի նրանց էկոնոմիկայի արդյունավետության առավել աճը։

Այդ գործում մեծ դեր է հատկացվում տեղական սովետներին՝ որպես իրենց շրջանների արտադրության ճյուղային կառուցվածքը, դրանց տերիտորիալ մասնագիտացումը որոշելու, տեղերում աշխատանքի և արտադրության կազմակերպման կոնկրետ ձևերն ընտրելու մեջ առավել ձեռնհաս մարմինների։ Հաշվի առնելով այդ՝ ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների խորհուրդը «ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու համար ժողովրդական դեպուտատների սովետների դերի հետագա բարձրացման և պատասխանատվության ուժեղացման միջոցառումների մասին» որոշմամբ (1986 թ. հուլիս) իշխանության տեղական մարմիններին լայն իրավունքներ են ընձեռել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության, սպասարկման ոլորտի, միջճյուղային արտադրությունների, կապիտալ շինարարության զարգացման և մյուս հարցերի լուծման գործում։

Միաժամանակ պետք է ուժեղացվի նաև պլանավորող մարմինների պատասխանատվությունը հանրային արտադրության տերիտորիալ տեղաբաշխման ու զարգացման պրոցեսի կենտրոնացված կոորդինացման և կարգավորման համար։ Նրանք կոչված են ըստ ամենայնի նպաստել հանրապետության միասնական ժողովրդատնտեսական համալիրի զարգացման գործում յուրաքանչյուր շրջանի ներդրման մեծացմանը։

Հարկ է նշել, որ ըստ հաստատված ավանդույթի, ասրքավորումների գերակշիռ մասը հիմնականում և առաջին հերթին տրամադրվում է արդյունաբերական կենտրոնների խոշոր ձեռնարկություններին։ Մինչդեռ լեռնային և նախալեռնային շրջանների ոչ մեծ ձեռնարկությունները արտադրության վերակառուցման, արդիականացման սահմանափակ հնարավորությունների պատճառով սովորաբար օգտագործում են ցածր արտադրողական, հաճախ բարոյապես հնացած տեխնիկա։

Աշխատանքի սանիտարահիգիենիկ պայմանները նույնպես հաճախ չեն համապատասխանում սահմանված նորմաներին ու նորմատիվներին, բանվորների վարձատրությունը զգալիորեն ցածր է, աշխատողները լիովին ապահովված չեն կենցաղային և բժշկական սպասարկմամբ, բնակարանով, մսուր-մանկապարտեզների տեղերով և այլն։ Նշված թերությունների վերացումը, այն է՝ աշխատանքի և արտադրության կազմակերպման, մարդկանց աշխատանքային, սանիտարակենցաղային, բնակարանային-կոմունալ պայմանների բարելավումը լեռնային ու նախալեռնային շրջանների ձեռնարկություններում աշխատանքի արդյունավետության բարձրացման կարևոր պայմաններից է։

Առանձնակի ուշադրություն են պահանջում սոցիալական պլանավորման հարցերը, որոնց նկատմամբ երբեմն ձևական մոտեցում է ցուցաբերվում։

Վերջին հաշվով, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, առաջադրանքների հաջողությամբ կատարումը, կադրերի հոսունության կրճատումը հնարավոր են սոսկ այն դեպքում, երբ ուշադրության կենտրոնում են դրվում ոչ միայն կոլեկտիվի առջև ծառացած խնդիրները, այլև հենց կոլեկտիվը, որը պետք է լուծի այդ խնդիրները։

Լեռնային և նախալեռնային շրջաններում արդյունաբերության տեղաբաշխման ու զարգացման պրոբլեմը սրվում է աշխատուժի ցածր որակավորման պատճառով։



ժամանակակից արդյունաբերական արտադրությունը, առավել, քան նախկինում, կախված է բանվորների որակավորման մակարդակից, որոնք ընդունակ են, մի կողմից, բարձրարդյունավետ օգտագործել հենց իրենց ստեղծած վիթխարի արտադրական ապարատը, բայց մյուս կողմից էլ անփութության, անփորձության պատճառով կարող են նյութական լուրջ վնասներ հասցնել արտադրությանը։ Ուստի այսօր առանձնապես մեծանում է մարդկային գործոնի՝ նրա մասնագիտական պատրաստության, որակավորման բարձրացման նշանակությունը և այլն։

Չնայած մեր հանրապետության լեռնային և նախալեռնային շրջաններում բավական երկար ժամանակ է, ինչ գործում են արդյունաբերական ձեռնարկություններ, բայց այդտեղ որակյալ աշխատուժի պրոֆեսիոնալ պատրաստության հարցը դեռ լուծված չէ։ Բանվորական մասնագիտությունների ուսուցման հստակորեն կազմակերպված համակարգ չկա։ Քաղաքներում, քաղաքատիպ ավաններում և շրջկենտրոններում, որտեղ, օրինակ, թեթև արդյունաբերության բազմաթիվ օբյեկտներ կան (Թալին, Ապարան, Սիսիան, Գորիս, Կամո, Ղափան, Հրազդան և այլն) ոչ մի ուսումնաարտադրական կոմբինատ կամ պրոֆտեխուսումնարան չկա։ Նախատեսված էր վերոհիշյալ քաղաքներից մի քանիսում տասնմեկերորդ հնգամյակի տարիներին ստեղծել այդպիսի կոմբինատներ, բայց մինչև օրս սայլը տեղից չի շարժվել։

Լեռնային և նախալեռնային շրջաններում նոր աշխատատեղերի առաջանցիկ ստեղծման և Երևանից ու նրա ագլոմերացիայից արդյունաբերական արտադրության ապակենտրոնացման կապակցությամբ նպատակահարմար կլիներ մայրաքաղաքից այդ շրջանները փոխադրել նաև որոշ պրոֆտեխուսումնարաններ։

Այսօր լեռնային շրջանների արդյունաբերության համար բանվորական կադրեր են պատրաստվում անմիջականորեն արտադրությունում։ Եվ այդ գործը օբյեկտիվ ու սուբյեկտիվ պատճառներից բխող որոշակի դժվարությունների հետ է կապված։

Նոր ձեռնարկությունների ստեղծումը ծրագրելուց առաջ հարկավոր է լրջորեն կշռադատել ապագա բանվորների մասնագիտական պատրաստության, նրանց ուսուցման մեթոդների ու ձևերի ճիշտ ընտրության հարցերը։

Այսպիսով, մեր կատարած վերլուծության արդյունքները վկայում են, որ հանրապետության լեռնային և նախալեռնային շրջանների ձեռնարկությունների արդյունավետ աշխատանքի հիմնական պայմանը դրանց նպատակահարմար տեղաբաշխումն է, արտադրության կազմակերպման կատարելագործումը, աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավումը և հատկապես որակյալ բանուժի պատրաստումը։

Լեռնային շրջանների ձեռնարկությունների գործունեության տեխնիկատնտեսական ցուցանիշները ճյուղի միջին մակարդակին հասցնելը ոչ միայն այդ շրջանների, այլև ողջ հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կարևոր ռեզերվն է։ Ուստի անհրաժեշտ է այսուհետ ևս մեծ ուշադրություն դարձնել արտադրողական ուժերի տեղաբաշխման կատարելագործմանը, որը պետք է ապահովի հանրային աշխատանքի խնայողականությունը, առանձին շրջանների բարձրարդյունավետ կոմպլեքս զարգացումը, հանրապետության էկոնոմիկայում դրանցից յուրաքանչյուրի ավելի մեծ ներդրումը։

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԻՐԱՎԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՆԵՐԳՈՐԾՈՒՆՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. ԴԱԴԱՅԱՆ**
*Հայկական ՍՍՀ արդարադատության մինիստր*

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԻԿ մեծ գոհունակությամբ ընդունեցին վերջին ժամանակներս մեր երկրում իրականացված խոշոր միջոցառումները՝ ուղղված օրենսդրության հետագա կատարելագործմանը, սոցիալիստական օրինականության և իրավակարգի ամրապնդմանը։ Ուժեղացել է պայքարը սոցիալիստական սեփականության հափշտակումների, չարաշահումների, անտնտեսվարության, դրամաշորթության, սպեկուլյացիայի, կաշառակերության, խուլիգանության և այլ բացասական դրսևորումների դեմ։ Այդ առնչությամբ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. մարտյան պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց. «...այսուհետև էլ վճռական միջոցներ կձեռնարկվեն ամենուրեք կարգուկանոն հաստատելու համար, խորթ երևույթներից, հասարակության և նրա քաղաքացիների շահերի նկատմամբ ամեն տեսակ ոտնձգություններից մեր կյանքը մաքրելու, սոցիալիստական օրինականությունը ամրապնդելու համար»։

Այդ բոլորը վկայում են իրավունքի և օրինականության պահանջների դերի բարձրացման, պետական և հասարակական կյանքի բոլոր կողմերի իրավական հիմքի ամրապնդման մասին։ Դրա հետ մեկտեղ կարգապահության և կազմակերպվածության հաստատումը, սոցիալիստական դեմոկրատիզմի հետագա զարգացումը մեծապես պայմանավորված են սովետական մարդկանց իրավագիտակցությամբ, ամեն մի քաղաքացու կողմից իր իրավունքների և ազատությունների ճիշտ ըմբռնումով, դրանց օգտագործման կարողությամբ, իրենց պարտականությունները կատարելու պատրաստակամությամբ։ Այդ իսկ պատճառով պետական և հասարակական կյանքի իրավական հիմքի հետագա ամրապնդումը, սոցիալիստական օրինականության և իրավակարգի անշեղ պահպանումը պայմանավորում են աշխատավորների իրավական դաստիարակության բարելավման անհրաժեշտությունը։

«Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս,— նշվում է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում,— անհատի բարձր քաղաքացիականության, սովետական օրենքների և սոցիալիստական համակեցության կանոնների նկատմամբ հարգանքի, սոցիալիստական օրինականության ամեն տեսակ խախտումների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի, իրավակարգի պահպանությանը ակտիվորեն մասնակցելու պատրաստակամության դաստիարակությանը»։ Բնակչության իրավական դաստիարակության կատարելագործման անհրաժեշտության մասին հատկապես շեշտվեց ՍՄԿԿ XXVII համագումարին Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ։

«Աշխատավորների իրավական դաստիարակության բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հանրահայտ որոշումն առաջադրում է ամբողջ իրավադաստիարակչական աշխատանքի արմատական բարելավման լայն ծրագիր, որը հաջողությամբ իրականացվում է կյանքում՝ կուսակցական



և հասարակական այլ կազմակերպությունների, իրավապահպան և ժողովրդական կրթության մարմինների, մասսայական ինֆորմացիայի միջոցների, աշխատավորական և ուսումնական կոլեկտիվների, ստեղծագործական միությունների և կուլտուր-լուսավորական հիմնարկների ուժերով։

Ներկայումս մեր երկրում ստեղծված է մասսաների իրավական ուսուցման և լուսավորության կազմակերպման ձևերի լայն համակարգ։ Հանրակրթական դպրոցներում և պրոֆտեխուսումնարաններում մտցված են «Սովետական պետության և իրավունքի հիմունքներ», «Իրավագիտության հիմունքներ» դասընթացները։ Ընդլայնվում է սովետական իրավունքի հիմունքների դասավանդումը ոչ իրավաբանական բուհերում և տեխնիկումներում։ Բնակչության իրավական լուսավորությունն իրականացվում է նաև իրավական գիտելիքների ժողովրդական համալսարանների միջոցով։ Ստեղծվել են «Մարդը և օրենքը» ռադիո և հեռուստատեսային իրավական հանդեսներ, պարբերաբար անցկացվում են իրավական գիտելիքների միամսյակներ և օլիմպիադաներ, որոնք լայն ճանաչում են ստացել։

Սակայն պետք է նշել, որ բնակչության իրավական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքը դեռևս ետ է մնում օրվա պահանջներից։ Դա բացատրվում է նրանով, որ իրավական դաստիարակության ակտիվացումը միշտ չէ, որ զուգակցվում է դաստիարակության մյուս ձևերի և, առաջին հերթին, աշխատանքային ու բարոյական դաստիարակության հետ։ Ձեռնարկված առանձին միջոցներ կրել են էպիզոդիկ բնույթ, որոշ դեպքերում էլ դրսևորվել է ֆորմալիզմ։

ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների որոշումները մասսաների իրավական դաստիարակության հետագա կատարելագործման ծրագրային ուղեցույց են։ Ներկայումս մեր առջև ծառացած է բարդ և պատասխանատու խնդիր։ Անհրաժեշտ է ոչ միայն վերացնել իրավական դաստիարակության գործում տեղ գտած թերությունները, այլև բարձրացնել այդ աշխատանքը նոր, որակապես ավելի բարձր աստիճանի։

Մեր երկիրը իր զարգացման մեջ մոտեցել է պատմական այնպիսի բնագծի, երբ ոչ միայն հասունացել, այլև անխուսափելի են դարձել արտադրողական ուժերում արմատական խոր փոփոխությունները և դրա հետ կապված արտադրական հարաբերությունների կատարելագործումը։ Պետք է փոխվի նաև մարդկանց գիտակցությունը, իսկ դրանում փոքր չէ իրավական գիտելիքների ու կուլտուրայի դերը։ Դրա համար էլ նրանց իրավագիտական մակարդակի հետագա բարձրացման անհրաժեշտ պայմանն է իրավական դաստիարակության համակարգի այնպիսի փոփոխությունը, որն ապահովի սոցիալիստական հասարակարգի հետագա կատարելագործման հետ կապված բարձր նպատակներին հասնելը։ Այդ ամենի կազմակերպական արտահայտությունը պետք է լինի իրավական պարտուսը։

Քաղաքացիների իրավական դաստիարակության, նրանց մոտ իրավական բարձր կուլտուրայի ձևավորման ասպարեզում որոշ աշխատանք է տարվում մեր հանրապետությունում։ Դրա գնահատականը տրվեց «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, որտեղ նշվում է, որ «ավելի ակտիվ են մղվում իրավական պրոպագանդան, պայքարը հարբեցողության դեմ, որոշ չափով կրճատվել է իրավախախտումների քանակը»։ Անցած տարի հանրապետության իրավապահպան մարմինների աշխատողները իրավական թեմաներով անցկացրել են ավելի քան 17 հազար դասախոսություն և զրույց-զեկուցումներ։ Ակտիվ կերպով օգտագործվում են մասսայական ինֆորմացիայի միջոցները։ «Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Երեկոյան Երևան», «Կոմսոմոլեց», «Ավանգարդ», ինչպես նաև շրջանային թերթերի էջերում պարբերաբար հրապարակվում են իրավական դաստիարակության արդիական նշանակության հարցերին նվիրված հոդվածներ։ Համեմատական վերլուծությունը ցույց է տալիս, որ 1985 թ., 1980 թ. համեմատությամբ, երկու անգամ

աճել է բարոյաիրավական բնույթի հրապարակումների քանակը։ Որոշ չափով բարելավվել է նաև հեռուստատեսային և ռադիոհաղորդումների որակը։

Հանրապետությունում հրատարակվում են բավարար քանակությամբ օրենսգրքեր, տեղեկատու և հանրամատչելի իրավաբանական գրականություն։ Մեր մինիստրությունը մեծ աշխատանք է տանում Հայկական ՍՍՀ օրենքների ժողովածուն հրապարակելու համար։ Իրավադաստիարակչական աշխատանքների յուրատեսակ կենտրոն է մինիստրությանն առընթեր գործող իրավական պրոպագանդայի միջգերատեսչական կոորդինացիոն-մեթոդական խորհուրդը, որը կոորդինացնում է այդ ասպարեզում պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների ծավալած գործունեությունը։ Խորհրդի նիստերում պարբերաբար քննարկվում են մինիստրությունների, գերատեսչությունների, հեռուստատեսության, ռադիոյի, թերթերի խմբագրությունների պատասխանատու աշխատողների, ինչպես նաև իրավական պրոպագանդայի շրջանային և քաղաքային կոորդինացիոն-մեթոդական խորհուրդների նախագահների հաղորդումները՝ իրավադաստիարակչական աշխատանքի վիճակի մասին, մշակվում են համապատասխան հանձնարարականներ՝ ուղղված այդ աշխատանքի ձևերի և մեթոդների կատարելագործմանը։ Հատուկ ուշադրություն է նվիրվում հակաալկոհոլային օրենսդրության հիմնական դրույթների պարզաբանմանը։ Այսպես, խորհրդի նիստում քննարկվել է «Հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման լույսի ներքո՝ հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարի ուժեղացման վերաբերյալ օրենսդրության պրոպագանդման բարելավման հարցը։ Մշակվել են համապատասխան հանձնարարականներ, ինչպես նաև դասախոսությունների և զրույց-զեկուցումների օրինակելի թեմատիկա։

Քաղաքացիների մոտ իրավական բարձր կուլտուրայի ձևավորման, նրանց իրավագիտական մակարդակի բարձրացման նպատակով տարվող աշխատանքներն արդյունավետ կազմակերպելու գործում մեծ դեր են խաղում իրավական պրոպագանդայի շրջանային և քաղաքային կոորդինացիոն-մեթոդական խորհուրդները, որոնք իրենց աշխատանքում սերտորեն համագործակցում են կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեների հետ։ Այդ ասպարեզում հատկապես ակտիվ աշխատանք են տանում Աշտարակի, Կամոյի, Աբովյանի, Էջմիածնի շրջանների, Կիրովական և Դիլիջան քաղաքների կոորդինացիոն-մեթոդական խորհուրդները։ Այսպես, Աշտարակի շրջանի իրավական պրոպագանդայի կոորդինացիոն-մեթոդական խորհուրդը (նախագահ՝ ժողդատարանի նախագահ Ս. Համբարձումյան) կուսակցության շրջանային կոմիտեի և «Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպության հետ համատեղ, կազմակերպել է «Իրավական գիտելիքներ՝ երիտասարդությանը» դասախոսությունների շարքը։

Կիրովական քաղաքի իրավական պրոպագանդայի կոորդինացիոն-մեթոդական խորհուրդը նույնպես ակտիվ մասնակցություն է ցույց տալիս ՀԿԿ Կիրովականի քաղկոմի նախաձեռնությամբ ստեղծված՝ պետական և աշխատանքային կարգապահության և սոցիալիստական օրինականության ամրապնդման աշխատանքները կոորդինացնող հանձնաժողովի գործունեությանը։ Խորհրդի նախագահ, ժողդատարանի նախագահ Մ. Մկրտչյանը միաժամանակ ղեկավարում է նշված հանձնաժողովի «Անչափահասների շրջանում իրավախախտումների կանխարգելման աշխատանքների կազմակերպման» սեկցիան։ Անչափահասների շրջանում իրավադաստիարակչական աշխատանքներն արդյունավետ կազմակերպելու նպատակով նրա նախաձեռնությամբ կատարվել է քաղաքի հիմնարկ-ձեռնարկություններում աշխատող անչափահասների հաշվառում։

Ձեռնարկված իրավադաստիարակչական և պրոֆիլակտիկ միջոցների արդյունավետության մասին է վկայում դատվածության նվազեցումը քաղաքում։ Հարկ է նշել նաև, որ հանրապետության արդարադատության մինիստրության կոլեգիան հավանություն տվեց Կիրովականի ժողդատարանի և իրավական պրոպագանդայի կոորդինացիոն-մեթոդական խորհրդի՝ օրենսդրության պրոպագանդման, քաղաքացիների իրավական դաստիարակության և պրոֆիլակտիկ ներգործության միջոցների իրականացման նպատակով կատարած աշխատանքին։ Իրավական գիտելիքների տարածման գործում մեծ անելիքներ ունեն մասսայական ինֆորմացիայի տեղական միջոցները։ Այդ առնչությամբ ակտիվորեն օգտագործվում են շրջանային թերթերի և տեղական ռադիոհանգույցների հնարավորությունները։ Շրջանային թերթերի խմբագրությունների հետ համատեղ մշակվում են իրավական բնույթի հրապարակումների հեռանկարային պլաններ։ Կամոյի շրջանում, օրինակ, պրակտիկա է դարձել իրավական թեմաներով հոդվածների նախնական գրախոսությունը շրջանային «Լենինյան դրոշով» թերթի խմբագրությանն առընթեր արտահաստիքային իրավաբանական խորհրդի կողմից (նախագահ՝ ժողդատավոր Հ. Սարգսյան), որը, ինչ խոսք, հնարավորություն է ընձեռում արդյունավետ հսկողություն իրականացնելու հրապարակվող նյութերի որակի նկատմամբ։ Այդ բնագավառում հատկապես արդյունավետ է «Աշտարակ» (Աշտարակի շրջան), «Կոմունիզմի ուղիով» (Էջմիածնի շրջան), «Երասխ» (Բաղրամյանի շրջան), «Ծաղկունք» (Ապարանի շրջան), «Արևածագ» (Կալինինոյի շրջան) թերթերի խմբագրությունների ծավալած աշխատանքը։ Իրավական պրոպագանդայի կարևոր ձևերից են արտագնա դատական նիստերը, ժողդատավորների և ժողատենակալների մասնակցությամբ դատավճիռների և մասնավոր որոշումների քննարկումները աշխատավորական կոլեկտիվներում, հանդիպումները ընտրողների հետ, հաշվետվությունները։ Ժողդատարանների կողմից բնակչության շրջանում իրականացվող միջոցառումները ոչ այլ ինչ են, եթե ոչ յուրովի գաղափարական-քաղաքական աշխատանք, որի նշանակությունը չափազանց մեծ է։ Հիմնականում ժողդատավորները մեծ պատասխանատվությամբ են մոտենում այդ աշխատանքի կազմակերպմանը, սակայն կան առանձին ժողդատարաններ, որոնք թերագնահատում են այն, դրսևորում ձևական մոտեցում։ Մինիստրությունը ձեռնարկում է անհրաժեշտ միջոցներ նշված թերությունները վերացնելու համար։

Քաղաքացիների իրավական դաստիարակության գործում մեծ դեր են խաղում աշխատավորական կոլեկտիվները։ «Աշխատավորական կոլեկտիվները,— ասված է նրանց մասին հրապարակված ՍՍՀՄ օրենքում,— միջոցներ են ձեռնարկում կոլեկտիվի անդամներին դաստիարակելու... օրենքները կատարելու և սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու ոգով, հարբեցողության, խուլիգանության, ընչաքաղցության և կոմունիստական բարոյականության այլ հակոտնյաների նկատմամբ անհաշտության ոգով. մասնակցում են իրավախախտումները կանխելու աշխատանքին, միջոցառումներ են իրականացնում իրավախախտումներ կատարած անձանց վերադաստիարակելու համար»։ Երեք տարի առաջ ընդունված այդ օրենքը, անտարակույս, նպաստել է աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության ակտիվացմանը։ Սակայն, ինչպես ՍՄԿԿ XXVII համագումարում նշեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը, «...ասել, թե դա տալիս է այն արդյունքները, որ մենք ակնկալում էինք, առայժմ չի կարելի»։ Եվ, իրոք, դեռևս քիչ չեն դեպքերը, երբ աշխատավորական կոլեկտիվները թույլ են իրականացնում իրենց լիազորությունները իրավական դաստիարակության և իրավախախտումների կանխարգելման բնագավառում, չեն նպաստում աշխատավորական կոլեկտիվներում հակահասարակական արարքներ կատարած անձանց նկատմամբ անհանդուրժողության մթնոլորտի ստեղծմանը։ Մինչդեռ այդ գործում նրանց դերը շատ մեծ է։ Այսպես, աշխատավորական կոլեկտիվի միջնորդությամբ դատարանը կարող է որոշում ընդունել պայմանական դատապարտումը փոխելու մասին և մեղավոր անձանց ուղարկել դատավճռով նախատեսված պատիժը փաստացի կրելու։ Հանրապետության յոթ շրջաններում կատարած ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ նորմը թույլ է կիրառվում։ Պայմանական դատապարտվածներից յուրաքանչյուր վեցերորդը անհրաժեշտ հետևություններ չի արել, իրեն անվայել է պահել, ոմանք էլ, հասարակական ներգործությունից խուսափելու նպատակով, հեռացել են աշխատավորական կո-

լեկտիվներից։ Չնայած դրան, այդ կոլեկտիվներից և ոչ մեկը հարց չի բարձրացրել պայմանական դատապարտումը փոխելու մասին։ Այդ երևույթի պատճառներից մեկն էլ այն է, որ տնտեսական ղեկավարները, աշխատավորների լայն մասսաները ինչպես հարկն է ծանոթ չեն գործող օրենսդրության նորմերի հետ։ Հետևաբար, անհրաժեշտ է ուժեղացնել դրանց պրոպագանդման, աշխատավորական կոլեկտիվների մասին ՍՍՀՄ օրենքի հիմնական դրույթների պարզաբանման նպատակով տարվող աշխատանքը։

Իրավական դաստիարակության բարձր արդյունավետությունն ապահովելու համար անհրաժեշտ է բազմակողմանի, կոմպլեքս մոտեցում։ Արդարադատության մինիստրության ծավալած իրավական դաստիարակության վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ գործը շատ տեղերում սահմանափակվում է իրավական թեմաներով դասախոսություններ և զրույցներ կազմակերպելով։ Իհարկե, ճիշտ չի լինի թերագնահատել դասախոսական պրոպագանդայի դերը, բայց չի կարելի նաև գերագնահատել այն։ Չի կարելի մոռանալ, որ մարդկանց մոտ իրավական ճիշտ հայացքների և դիրքորոշման արագ ձևավորմանը մեծ չափով նպաստում է հատկապես նրանց մասնակցությունը հասարակական ինքնագործունեության մարմինների աշխատանքին։ Դրանց համակարգում կարևոր տեղ ունեն ընկերական դատարանները, որոնք կոչված են ակտիվորեն նպաստելու քաղաքացիների դաստիարակությանը աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, հանրային սեփականության հանդեպ հոգատարության, սոցիալիստական համակեցության կանոնները պահպանելու, մարդկանց մեջ կոլեկտիվիզմ և ընկերական փոխօգնության, քաղաքացու արժանապատվության ու պատվի հարգման զգացմունքը զարգացնելու ոգով։ Ընկերական դատարանների աշխատանքում գլխավորը իրավախախտումների կանխումն է, համոզման և հասարակական ներգործության միջոցով մարդկանց դաստիարակությունը, հակահասարակական ամեն մի արարքի նկատմամբ անհանդուրժելիության մթնոլորտի ստեղծումը։ Հանրապետության ընկերական դատարանների աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ վերջին տարիներին շատ հիմնարկ-ձեռնարկություններում նրանց գործունեությունն ակտիվացել է։ Զգալի չափով զարգացել է նրանց նախաձեռնությունը, արդյունավետ են կիրառվում ընկերական դատարանների մասին կանոնադրության նախատեսված ներգործության բոլոր միջոցները, ապահովվում է նիստերի դաստիարակչական դերը։ Սակայն ոչ բոլոր տեղերում է ընկերական դատարանների աշխատանքը համապատասխանում ներկայացվող պահանջներին։ Նրանցից շատերը նախաձեռնություն չեն ցուցաբերում և, որպես կանոն, քննության են առնում ձեռնարկությունների արհմիութենական կոմիտեների կամ իրավապահպան մարմինների ներկայացրած նյութերը։ Այսպես, 1983 թ. մինչև 1985 թ. սեպտեմբերն ընկած ժամանակաընթացքում Ղափանի «էլեկտրոն» գործարանի ընկերական դատարանը քննարկել է ընդամենը երեք գործ, որոնք ստացվել են շրջանի ներքին գործերի բաժնից։ Որոշ ընկերական դատարաններ իրենց կազմով չեն համապատասխանում այդ դատարանների մասին կանոնադրության պահանջներին։ Կալինինոյի շրջանի Նորաշենի կոլտնտեսության ընկերական դատարանը, օրինակ, բաղկացած էր երկու հոգուց, մինչդեռ կանոնադրության համաձայն նրա անդամների թիվը չի կարող հինգից պակաս լինել։ Հասկանալի է, որ այն իրավասու չէ գործեր քննել և որոշումներ ընդունել։ Շատ հիմնարկ-ձեռնարկություններում հակահասարակական արարքներ կատարած անձանց նկատմամբ ներգործության միջոցները հիմնականում կիրառում է ադմինիստրացիան, և այդ հանգամանքը նույնպես բացասաբար է ազդում ընկերական դատարանի հեղինակության վրա։ Թերություններ կան նաև ժողդատարանների կողմից ընկերական դատարաններին իրավական օգնություն ցույց տալու գործում։

Անհրաժեշտ է վերակառուցել ընկերական դատարանների աշխատանքի ոճը, այն համապատասխանեցնել կուսակցության առաջադրած արդի պահանջներին։ Այդ նպատակով հարկավոր է արմատապես բարելավել ժողդատարանների կողմից նրանց ցույց տրվող իրավական օգնությունը և հասնել



այն բանին, որ նրանք ծառայեն իրենց գլխավոր նպատակին՝ իրավախախտումների կանխարգելմանը և իրավական դաստիարակությանը։

Աշխատավորներին ցույց տրվող իրավական օգնությունն ավելի արդյունավետ կազմակերպելու նպատակով խոշոր հիմնարկ-ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում ստեղծվել են հասարակական իրավաբանական կոնսուլտացիաներ։ Ներկայումս հանրապետությունում գործում են ավելի քան 500 նման կոնսուլտացիաներ, որոնցից մոտ 400-ը՝ գյուղական վայրերում։ Մշակված աշխատանքային պլաններին համապատասխան՝ սահմանված օրերին կազմակերպվում է քաղաքացիների ընդունելություն, ձևակերպվում են տարբեր բնույթի իրավական փաստաթղթեր, անցկացվում են հարց ու պատասխանի երեկոներ։ Կոնսուլտացիաների անդամները իրավական օգնություն են ցույց տալիս ընկերական դատարաններին, աշխատանքային վեճերի հանձնաժողովներին։ Ընթացիկ տարվա մարտին Հայկական ՍՍՀ արդարադատության մինիստրության կոլեգիան և ագրոարդյունաբերական համալիրի աշխատողների արհմիության հանրապետական կոմիտեի նախագահությունը, քննարկելով հասարակական իրավաբանական կոնսուլտացիաների՝ գյուղի աշխատավորների իրավական դաստիարակության աշխատանքի դըրվածքի համամիութենական ստուգատես-մրցույթի առաջին փուլի արդյունքները, լավագույնը ճանաչեցին Աշտարակի, Էջմիածնի, Շամշադինի և Երևան քաղաքի Շահումյանի շրջանների հասարակական իրավաբանական կոնսուլտացիաները։

Իրավական դաստիարակության գործում մեծ դեր են խաղում իրավական գիտելիքների ժողովրդական համալսարանները։ Ներկայումս հանրապետությունում գործում են այդպիսի 47 ժողովրդական համալսարաններ, որոնց ընկերական դատարանների անդամների, ժողովրդական ատենակալների, ժողովրդական դրուժինիկների, արհմիութենական ակտիվի և ժողվերահսկիչների ֆակուլտետներում ընդգրկված են մոտ 13 հազար ունկնդիրներ։ Ժողհամալսարաններում պարապմունքներն անցկացվում են ունկնդիրների ակտիվ մասնակցությամբ, հաճախակի կազմակերպվում են գիտապրակտիկ կոնֆերանսներ, հարց ու պատասխանի երեկոներ, բարոյաիրավական բնույթի գրքերի և կինոնկարների քննարկումներ։ Ուսումնադաստիարակչական աշխատանքները լավ են կազմակերպված Թումանյանի, Սիսիանի, Գորիսի, Երևան քաղաքի Շահումյանի, Լենինյան և 26 կոմիսարների անվան շրջանների ժողհամալսարաններում։

Հանրապետության ժողհամալսարաններում ուսումնադաստիարակչական աշխատանքի ձևերն ու մեթոդները բարելավելու նպատակով զգալի աշխատանք է կատարում իրավական գիտելիքների ժողովրդական համալսարանների կոորդինացիոն հանձնաժողովը։ Հանձնաժողովը մշակում է ուսումնաթեմատիկ պլաններ, նիստերում պարբերաբար քննարկում ժողհամալսարանների ռեկտորների հաղորդումները ուսումնադաստիարակչական աշխատանքի վիճակի մասին, ժողհամալսարանների հանրապետական խորհրդի անդամների հետ համատեղ անցկացնում պարապմունքների ունկնդրումներ։ Հատուկ ուշադրություն է նվիրվում ունկնդիրների գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացմանը։ Այսպես, բոլոր ժողհամալսարաններում կուսակցական և սովետական մարմինների աշխատողների ակտիվ մասնակցությամբ նախատեսվում է անցկացնել լրացուցիչ պարապմունքներ՝ նվիրված ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերի ուսումնասիրությանը։

Արդի փուլում կոմունիստական կուսակցության և սովետական պետության առջև ծառացած խնդիրների մեջ մեծ նշանակություն ունի նոր մարդու դաստիարակությունը։ «Ապագան շատ բանով որոշվում է նրանով,— նշեց ՍՄԿԿ XXVII համագումարում Մ. Ս. Գորբաչովը,— թե մենք այսօր ինչպիսի երիտասարդություն ենք դաստիարակում։ Սա ամբողջ կուսակցության, ամբողջ ժողովրդի խնդիրն է»։ Իսկ երիտասարդների կոմունիստական դաստիարակության գործում չափազանց կարևոր նշանակություն ունի իրավական դաստիարակությունը, նրանց մոտ իրավական ճիշտ հայացքների ձևավորումը։

Եվ, իրոք, անհատի ձևավորման վաղ շրջանի բարոյաիրավական դաստիարակության վրիպումները հետագայում կարող են դառնալ դժվար բուժելի սոցիալական արատներ։

Երիտասարդության իրավական դաստիարակության նպատակով բավականին աշխատանք է տարվում մեր հանրապետությունում։ Արդարադատության մինիստրությունը, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության, լուսավորության մինիստրությունների, պրոֆտեխկրթության պետական կոմիտեի հետ համատեղ, բուհերում, տեխնիկումներում, հանրակրթական դպրոցներում և պրոֆտեխուսումնարաններում պարբերաբար ուսումնասիրում է սովորողների իրավական ուսուցման և իրավական դաստիարակության վիճակը։ Վերջին տարիներին նման ուսումնասիրություններ կատարվել են Երևանի պետական համալսարանում, Խ. Աբովյանի անվան մանկավարժական, Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական, ժողովրդական տնտեսության ինստիտուտներում, առևտրի, ռադիոէլեկտրակապի և ավտոճանապարհային տեխնիկումներում, Նաիրիի, Մասիսի, Էջմիածնի, Երևան քաղաքի Սպանդարյան և Շահումյան շրջանների հանրակրթական դպրոցներում, Երևանի №№ 10, 11, 16, 18, 19, 38 պրոֆտեխուսումնարաններում։ Ուսումնասիրությունների արդյունքները քննարկվել են կոլեգիաների համատեղ նիստերում, մշակվել են համապատասխան մեթոդական հանձնարարականներ՝ ուղղված իրավադաստիարակչական աշխատանքի բարելավմանը։

1985 թվականի ապրիլին Կրեմլում, ՍՍՀՄ Գերագույն սովետի Միության սովետի և Ազգությունների սովետի ժողովրդական կրթության ու կուլտուրայի հանձնաժողովների համատեղ նիստում քննարկվեց Հայկական ՍՍՀ-ում հանրակրթական դպրոցների և պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների սովորողների շրջանում դաստիարակչական աշխատանքի հետագա կատարելագործման և իրավախախտումների կանխման մասին օրենսդրության պահանջների կատարման հարցը։ Նշվեց, որ պետական մարմինները և հասարակական կազմակերպությունները, իրագործելով հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը, պլանաչափորեն կատարելագործում են սովորողների բարոյաիրավական դաստիարակության աշխատանքը։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ նվազել է իրավախախտումների թիվը անչափահասների շրջանում։ Որոշման մեջ նշվեցին նաև այդ նպատակով տարվող աշխատանքում տեղ գտած թերությունները և բացթողումները։ Մասնավորապես իրավապահպան մարմինները առկա հնարավորություններն ամենևին էլ լրիվ չեն օգտագործում դպրոցների ու պրոֆտեխուսումնարանների սովորողների շրջանում իրավախախտումները կանխարգելելու համար, բավարար խորությամբ չեն բացահայտում և ժամանակին չեն վերացնում իրավախախտումների կատարմանը նպաստող պատճառները։

Անչափահասների շրջանում տարվող պրոֆիլակտիկ աշխատանքներն ուժեղացնելու նպատակով ձեռնարկվել են լրացուցիչ մի շարք միջոցառումներ։ Այսպես, Հայկական ՍՍՀ լուսավորության, արդարադատության, ներքին գործերի մինիստրությունների և հանրապետական դատախազության կոլեգիաների համատեղ նիստում հաստատվեց միջոցառումների կոմպլեքսային պլան՝ ուղղված հանրակրթական դպրոցների սովորողների բարոյաիրավական դաստիարակության հետագա բարելավմանը։ Նման պլան մշակվեց նաև Հայկական ՍՍՀ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեի, հանրապետության արդարադատության և ներքին գործերի մինիստրությունների կողմից։ Անչափահասների իրավախախտումների կանխմանն ուղղված ժողդատարանների աշխատանքի կազմակերպման բարելավման հարցը 1985 թ. սեպտեմբերին քննարկվեց հանրապետության արդարադատության մինիստրության կոլեգիայի նիստում։ Մինիստրությունը մշակել և շահագրգռված մինիստրություններին, հասարակական կազմակերպություններին է ուղարկել անչափահասների համար կարդացվելիք դասախոսությունների օրինակելի թեմատիկան։

Երիտասարդության շրջանում իրավադաստիարակչական աշխատանքները



կազմակերպելիս արդարադատության մինիստրությունը սերտորեն համագործակցում է Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի հետ։ Այսպես, ՀԼԿԵՄ Կենտկոմի հետ համատեղ Էջմիածնի շրջանում ուսումնասիրվել է ժողդատարանի, արդարադատության հիմնարկների և կոմերիտմիության շրջանային կոմիտեի համագործակցության պրակտիկան գյուղական երիտասարդության իրավական դաստիարակության գործում։ Ուսումնասիրությունների արդյունքների հիման վրա մշակված առաջարկություններն ուղարկվեցին կոմերիտմիության քաղաքային, շրջանային կոմիտեներին և իրավական պրոպագանդայի բոլոր կոորդինացիոն-մեթոդական խորհուրդներին։ Ակտիվորեն գործում է ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղարության, արդարադատության մինիստրության կոլեգիայի և հանրապետական «Գիտելիք» ընկերության վարչության նախագահության համատեղ որոշմամբ ստեղծված «Երիտասարդությունը և օրենքը» բանավոր իրավական հանդեսը, որի թողարկումները նույնպես նպաստում են երիտասարդության իրավագիտական մակարդակի բարձրացմանը, նրանց մոտ իրավական բարձր կուլտուրայի ձևավորմանը։

Այս տարվա հունվարին հանրապետության արդարադատության մինիստրությանն առընթեր իրավական պրոպագանդայի կոորդինացիոն-մեթոդական խորհրդի նիստում քննության առնվեց խորհրդի անդամ, ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար Գ. Հակոբյանի զեկուցումը՝ Երիտասարդության բարոյաիրավական դաստիարակության վիճակի և հետագա բարելավման խնդիրների մասին։ Խորհուրդը ՀԼԿԵՄ Կենտկոմին, ինչպես նաև շահագրգռված մինիստրություններին և գերատեսչություններին արեց համապատասխան առաջարկություններ՝ ուղղված իրավադաստիարակչական աշխատանքի ձևերի ու մեթոդների հետագա կատարելագործմանը։

Հանրապետության պետական մարմինների ու հասարակական կազմակերպությունների համագործակցված աշխատանքը 1985 թ. տվեց որոշակի արդյունք։ Նախորդ տարվա համեմատությամբ, զգալիորեն նվազեց անչափահասների դատվածությունը։ Ուշադրության է արժանի, որ դա ձեռք է բերվել մի շարք ծանր հանցագործությունների՝ պետական և հանրային գույքի հափշտակումների, սպանությունների, բռնաբարության, քաղաքացիների անձնական գույքի գողությունների, կողոպուտների դեպքերի նվազման հաշվին։ Հանրապետության ութ շրջաններում (Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Ամասիայի, Եղեգնաձորի, Կրասնոսելսկի, Ստեփանավանի, Շամշադինի և Արագածի) 1985 թ. անչափահասներ չեն դատապարտվել։ Հասկանալի է, որ այդ ամենը փոքր-ինչ դրական տեղաշարժ է անցյալի համեմատությամբ, սակայն չպետք է ինքնահանգստացման պատճառ դառնա։

Սոցիալիստական պետության կարևոր ֆունկցիան պայքարն է անաշխատ եկամուտների դեմ։ «Այսօր մենք պետք է խոստովանենք,— ասվեց ՍՄԿԿ XXVII համագումարում,— որ վերահսկողության թուլացման հետևանքով և մի շարք այլ պատճառներով հայտնվել են մարդկանց խմբեր՝ պարզորոշ արտահայտված սեփականատիրական ձգտումներով, հասարակական շահերի նկատմամբ արհամարհական վերաբերմունքով»։ Եվ, իրոք, քիչ չեն այն փաստերը, երբ մարդիկ անաշխատ եկամուտներ են ստանում՝ զբաղվելով հափշտակումներով, սպեկուլյացիայով, կաշառակերությամբ, անօրինական գործունեության այլ ձևերով։ Նրանցից ոմանք հարստանալու նպատակով օգտագործում են պետությանը պատկանող մեքենաներն ու մեխանիզմները, փոխադրամիջոցները, բնակելի մակերեսը, վառելանյութը, հումքը և նյութերը։ Առևտրի, կենցաղային, կոմունալ, բժշկական սպասարկման ձեռնարկություններում և հիմնարկություններում, ուսումնական հաստատություններում տեղի են ունենում սպասարկումների դիմաց լրացուցիչ վճար կորզելու, դրամամուտքը յուրացնելու, քաղաքացիներին խաբելու, պրոտեկցիոնիզմի դեպքեր։ Հաճախ շահադիտական նպատակներով պաշտոնեական դիրքը չարաշահելու ուղին են բռնում պաշտոնատար անձինք։

Սոցիալիզմի բնույթին խորթ անաշխատ եկամուտներն արմատախիլ անելը համարելով քաղաքական, սոցիալ-տնտեսական և դաստիարակչական

կարևոր խնդիր՝ ՍՄԿԿ կենտկոմն ընդունեց «Անաշխատ եկամուտների դեմ պայքարն ուժեղացնելու միջոցառումների մասին» որոշումը, իսկ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը՝ համապատասխան հրամանագիր, որը ուժի մեջ է մտել հուլիսի 1-ից։ Ուժեղացել է քրեական պատասխանատվությունը կաշառակերության համար, նախատեսվում է լայնորեն օգտագործել դեկլարացիաների համակարգը, քաղաքացիների եկամուտների օրինականության վերահսկման մյուս ձևերը, բարձրացնել գույքային պատասխանատվությունը կատարվող շահադիտական հանցագործությունների համար։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ուղղակիորեն նշվում է. «Հրամայական անհրաժեշտություն համարել ղեկավար և տնտեսական կադրերի, ամբողջ բնակչության իրավական լայն դաստիարակության կազմակերպումը»։ Ներկայումս մեր խնդիրն է՝ հետևողական աշխատանք ծավալել անաշխատ եկամուտների դեմ պայքարն ուժեղացնելու մասին օրենսդրության հիմնական դրույթների պարզաբանման և ճիշտ կիրառման համար, բնակչությանը հասցնել այդ նորմերի բարոյական և գաղափարաքաղաքական իմաստը։

Հանրապետության արդարադատության մինիստրության կոլեգիայի այս տարվա ապրիլին տեղի ունեցած ընդլայնված նիստում քննարկվեցին ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներից բխող՝ Հայկական ՍՍՀ ժողդատարանների և արդարադատության հիմնարկների խնդիրները։ Նիստում հանգամանորեն վերլուծվեց հանրապետությունում տարվող իրավադաստիարակչական աշխատանքի վիճակը և նշվեց, որ, չնայած կատարած դրական աշխատանքին, այն դեռևս լիովին չի համապատասխանում կուսակցության առաջադրած արդի պահանջներին։ Տակավին չի ստեղծված իրավական դաստիարակության հստակ համակարգ։ Շատ տեղերում իրավադաստիարակչական աշխատանքները կազմակերպվում են դեպքից դեպք, միշտ չէ, որ հաշվի են առնվում տվյալ վայրում օրինականության կոնկրետ վիճակը, տարիքային տարբեր խմբերի հոգեբանական առանձնահատկությունները, որի հետևանքով զգալի չափով նվազում է անցկացվող միջոցառումների արդյունավետությունը։ Առանձին ժողդատավորներ, արդարադատության հիմնարկների աշխատողներ անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում իրավական պրոպագանդայի վերաբերյալ կուսակցության որոշումների, ինչպես նաև մինիստրության հանձնարարականների իրականացման նկատմամբ։ Այս բոլոր թերություններն ու բացթողումները վերացնելու և իրավադաստիարակչական աշխատանքն արդի պահանջներին համապատասխանեցնելու համար անհրաժեշտ է միշտ հիշել, որ մեր խնդիրն է՝ դաստիարակել ոչ թե իրավունքի գիտակների, այլ իրավական ճակատի մարտիկների, որոնք միշտ կարող են սանձել կարգազանցներին։

Իրավական դաստիարակության նպատակը յուրաքանչյուր քաղաքացու իրավական անհրաժեշտ մինիմում գիտելիքներ տալը չէ։ Դա միայն գործի կեսն է։ Անհրաժեշտ է նրանց մոտ ձևավորել հարգանք սոցիալիստական իրավունքի հանդեպ, հասնել այն բանին, որ նրանց համար օրենքների կատարումը դառնա գիտակցված ներքին պահանջմունք։ Հենց դա է իրավական դաստիարակության իսկական իմաստը։ Եվ այդ խնդրի լուծմանն են մեզ նպատակամղում կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը։

---

*Միջազգային թեմաներ*

# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՄԵՐԻԿՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԴԻՄԱԿԱՆ ՈՒՏՈՊԻԶՄԸ

**Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական համալսարանի փիլիսոփայության ֆակուլտետի ասպիրանտ

Աշխարհի ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ վիճակն այսօր բնորոշվում է երկու հակադիր պրոցեսներով։ Մի կողմից, ավելի ու ավելի են համակենտրոնանում մարդկության մտավոր և հուզական-կամային ձգտումները, մարդկություն, որն ստիպված է ապրել հակադիր հասարակական-քաղաքական սիստեմների պայմաններում և ձգտում է սոցիալական առաջադիմության միջոցով հաղթահարել գոյություն ունեցող պառակտումը։ Մյուս կողմից, աճում է այն հետադիմական ուժերի ագրեսիվությունը, որոնք մարդկությանն սպառնում են ջերմամիջուկային կործանմամբ։

Անշուշտ, մեր օրերում ամենազավթողական տրամադրության բուրժուական գործիչներն անգամ չեն կարող չընդունել, որ արտաքին քաղաքականության կարևորագույն նպատակը խաղաղության պահպանումն է։ Այդ բանին նրանց հարկադրում է հակապատերազմական զանգվածային շարժման աճը, ընտրողների աջակցությունից զրկվելու վախը և, ոչ պակաս չափով, ջերմամիջուկային հրդեհի հետևանքներից իրենց անձնական սարսափը։ Խաղաղության պահպանման պրոբլեմի նկատմամբ բուրժուական քաղաքագետների դասակարգային միտումնավորությունն այսօր դրսևորվում է նախ և առաջ սպառազինությունների մրցավազքի և ռազմական դիմակայության՝ որպես պատերազմից խուսափելու միջոցի, անհրաժեշտությունը պնդելու փաստում։ Սա էլ հենց այն ջրբաժանն է, որն ընկած է, մի կողմից, զենքի նոր տեսակների արտադրությունից հրաժարվելու և արդեն կուտակված զենքը ընդհուպ մինչև զինաթափումը կրճատելու ճանապարհով պատերազմի վտանգը վերացնելուն նպատակաուղղված Սովետական Միության վարած քաղաքականության և, մյուս կողմից, իմպերիալիստական քաղաքականության միջև, որը հիմնված է այն կեղծ դրույթի վրա, թե «խաղաղությունն ուժի դիրքերից» մարդկության համար ամենահուսալի խաղաղությունն է։ Արտաքին քաղաքականության պրոբլեմներն այսպես ըմբռնողներից Զ. Բժեզինսկին, որը պրեզիդենտ Քարտերի աջ տեղաշարժերի և ԱՄՆ-ի քաղաքականության մեջ 70-ական թվականների կեսերից սկսած կայսերական միտումների մարմնավորողն էր, այդ դիրքորոշումն արդարացնում էր՝ պնդելով, թե «գերտերությունների» միջև պատերազմը կարելի է կանխել միջուկային զենք կուտակելու միջոցով միայն։ Միջուկային զենքն իբրև թե «զսպվածության օրենսգիրք» է, որը բացառում է ռազմական դիմակայությունը։ Դժվար չէ այստեղ տեսնել ԱՄՆ-ի կառավարող շրջաններում իշխող այն տրամաբանությունը, որն այժմ ծնունդ

ների: Դրա անմիջական հետևանքները եղան 70-ական թվականների տնտեսական ճգնաժամը և իրենց ուժով ու նշանակությամբ ոչ պակաս ավերիչ բացասական երևույթները գաղափարական-հոգևոր ոլորտում: Երիտասարդական շարժման բռնկումը, հուզումները նեգրական գետտոյում, Վիետնամում ամերիկյան իմպերիալիզմի ռազմական ու բարոյաքաղաքական պարտությունը, Ուոթերգեյթի խայտառակությունը ամերիկյան շատ տեսաբանների դրդեցին խոսել «ավանդական արժեքների» ճգնաժամի մասին, որը սպառնում էր սրբել-տանել ԱՄՆ-ում կապիտալիզմի բուն հիմքերը: Այսպես, նորլիբերալիզմի խոշորագույն տեսաբաններից մեկը՝ «Ետինդուստրիալ հասարակության» մեծ աղմուկ հանած տեսության հեղինակ Դանիել Բելը, ստիպված էր ախտորոշել «ոգու խոր ճգնաժամային» հիվանդություն, որը համակել էր ամբողջ ամերիկյան հասարակությանը:

Ներքին սոցիալ-տնտեսական և գաղափարաքաղաքական անհաջողությունների ֆոնի վրա առավել ցայտուն էր ի հայտ գալիս ամերիկյան իմպերիալիզմի արտաքին քաղաքական դիրքերի թուլացումը: Զ. Բժեզինսկու արտահայտությամբ, Ամերիկան «մեկուսացած մնաց այս թշնամական աշխարհում»: ԱՄՆ-ի նկատմամբ համաշխարհային ընկերակցության թշնամանքի պատճառը պարզելն առանձին ջանք չի պահանջում: Այդ մասին խոսում են հենց իրենք՝ ամերիկյան քաղաքագետները: Օրինակ՝ Ի. Հորովիցի վերջին գրքում կարդում ենք. «Ներկայումս արդարության ակնհայտ պահանջների աճ է նկատվում ինչպես ազգային, այնպես էլ միջազգային մակարդակներով: Դա հասցնում է «ամերիկյան փայաբաժնի» վերաբաշխման համար պայքարը սրելուն» (Horowitz I. S., Beyond Empire and revolution: Miltarisation and Consolidation in the Third World. Oxford, 1982, p. 54):

Այս փաստերի լույսի ներքո պարզ է դառնում, թե հատկապես ինչն է դրդել ԱՄՆ-ի աջ պահպանողական ուժերին, համախմբելով իր շարքերը, գաղափարաքաղաքական խելահեղ հարձակում ծավալել ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում: Ձեռքից գնացող սոցիալ-քաղաքական ստատուս-քվոյի պաշտպանության փորձերի մեջ պետք է փնտրել ԱՄՆ-ի կառավարող դասակարգի «դեպի աջ» տեղաշարժի բանալին, որն ի հայտ էր եկել 70—80-ական թվականների սահմանագլխին: Մենք ակնհայտորեն տեսնում ենք, թե ինչպես, նորպահպանողականների կողմից սոցիալական ռևանշի քաղաքականության պատմական դատապարտվածությունը գիտակցելուն համեմատ, նրանց քաղաքական վարքագծին բնորոշ ագրեսիվությունը ոչ միայն չի նվազում, այլ, ընդհակառակն, ավելի աճում է: Մերկախոս չլինելու համար որպես օրինակ բերենք աջ պահպանողական շրջաններում «մեր տղա» անվանումը կրող ոչ անհայտ պատմաբան Ռիչարդ Փայփսի ճչան հայտարարությունը, թե ոչ վերասպառազինումը, ոչ ՍՍՀՄ-ի հետ հաշտվելը չեն կարող լիովին վերացնել պատերազմի սանձազերծման վտանգը, քանի դեռ ՍՍՀՄ-ում գոյություն ունի ներկայիս քաղաքական սիստեմը (տե՛ս Pipes R., How to Cope with the Soviet Threat: a Song-term strategy for the West-Commentary. N. Y., 1984, vol. 78, № 2, p. 30):

Հանրագումարի բերելով ժամանակակից ամերիկյան պահպանողականների քաղաքական աշխարհայացքի հետադիմական-ուտոպիական էությունը՝ մեկ անգամ ևս շեշտեցինք հասարակական-քաղաքական զարգացման օբյեկտիվ միտումներին ուժով հակադրվելու ամեն տեսակի փորձերի պատմականորեն դատապարտված լինելը: Միջուկային հրթիռներ թափահարող ամերիկյան իմպերիալիզմի նկատմամբ առաջադիմական շարժումները զսպվածություն են հանդես բերում, որպեսզի ԱՄՆ-ի ռազմատենչ վերնախավին միջուկային պատերազմ սանձազերծելու ձևական առիթ չտան: Սակայն աջ պահպանողական քաղաքագետները և նրանց վարձու տեսաբանները ակնհայտ մոլորության մեջ են ընկնում՝ կարծելով, թե առաջադեմ մարդկության խաղաղասիրական ձգտումները կարելի է օգտագործել սեփական քաղաքական նպատակների համար, ձեռք բերելով հակահեղափոխությունը արտահանելու կամ այլ խոսքով՝ համաշխարհային ժանդարմի դեր ստանձնելու «իրավունք»: Չէ որ կյանքի իրավունքը յուրաքանչյուրի բնածին ու անքակտելի իրավունքն է, և ամերիկյան իմպերիալիզմին երբեք չի հաջողվի ստիպել ժողովուրդներին հրաժարվելու դրանից: Այդ բանի հուսալի գրավականն է Սովետական Միության՝ Երկրագնդի վրա խաղաղության և սոցիալական առաջադիմության գլխավոր պատվարի, սկզբունքային ամուր ու անշեղ դիրքորոշումը:

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐԸ

Գ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ինչպես միշտ, այժմ էլ հետևողականորեն վարում է խաղաղության լենինյան քաղաքականություն, հանդես գալիս ժողովուրդների անվտանգության ամրապնդման և միջազգային լայն համագործակցության օգտին: Խաղաղության և անվտանգության համար հետևողական պայքար են ծավալել սոցիալիստական մյուս երկրները, զարգացող երկրների մեծամասնությունը, կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, աշխարհի խաղաղասեր մյուս ուժերը: Մոլորակում ստեղծված իրադրությունը պահանջում է նոր, լրացուցիչ միջոցներ ձեռնարկել՝ պատերազմի սպառնալիքը մեկընդմիշտ վերացնելու համար: ՍՄԿԿ XXVII համագումարում շեշտվեց, որ չկա ավելի բարձր ու մարդասիրական նպատակ, քան խաղաղության և միջազգային անվտանգության ըստ ամենայնի ամրապնդումը, պետությունների հարաբերություններից պատերազմի սպառնալիքի իսպառ վերացումը: Համագումարում վերստին հաստատվեց, որ մեր իդեալը զենքից ու բռնությունից զերծ աշխարհն է, որտեղ յուրաքանչյուր ժողովուրդ ազատորեն ընտրում է իր զարգացման ուղին, իր ապրելակերպը:*

*Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Սովետական Միությունը զինաթափման, սպառազինությունների մրցավազքի դադարեցման հարցը բարձրացրել է ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի բոլոր 41 նստաշրջաններում: Սակայն ամեն անգամ սովետական, ինչպես և մյուս երկրների խաղաղասիրական առաջարկությունները հանդիպել են ԱՄՆ-ի ու նրա մերձավոր դաշնակիցների դիմադրությանը:*

*ԱՄՆ-ը, որը ստանձնել է համաշխարհային ժանդարմի անփառունակ դերը, միայն վերջին 30 տարում տարբեր երկրների նկատմամբ 220 անգամ ուժ է գործադրել կամ դիմել է սպառնալիքի: Այդ ժամանակաընթացքում Վաշինգտոնի վարչակազմի հանցանքով աշխարհում տեղի են ունեցել 150 լոկալ պատերազմներ ու ռազմական կոնֆլիկտներ: Հավակնելով աշխարհակալության, ԱՄՆ-ը ինքնակոչ կերպով ամբողջ մայրցամաքներ հայտարարում է իր «կենսական շահերի» գոտիներ, անցանկալի երկրների նկատմամբ վարում խտրականության և նեոգլոբալիզմի քաղաքականություն, խոչընդոտում նրանց նորմալ զարգացմանը: Վիետնամի դեմ արյունոտ պատերազմը, Կուբայի բազմամյա շրջափակումը, պաղեստինյան ժողովրդի օրինական իրավունքների ոտնահարումը, անպաշտպան Գրենադայի զինված զավթումը, Նիկարագուայի դեմ ուղղված ագրեսիվ գործողությունները, չհայտարարված պատերազմն Աֆղանստանի և Լիբիայի դեմ սոսկ մի քանիսն են ամերիկյան իմպերիալիզմի անհամար չարագործություններից: Օրեցօր մեծանում է ԱՄՆ-ի ռազմական պոտենցիալը, մահաբեր զենքերի՝ միջուկային, քիմիական, սովորական զենքերի արտադրությունը: ԱՄՆ-ը ձգտում է միջուկային զենք տեղադրել նաև տիեզերքում: «Սովետական ռազմական սպառնալիքի» զրպարտչական պատրվակով ամերիկյան իմպերիալիզմը, նրա դաշնակիցները սանձազերծել են սպառազինությունների աննախադեպ մրցավազք: Այսօր մոլորակի 350 բնակչին ընկնում է մեկ զինվոր, 3.700-ին՝ մեկ բժիշկ: Հաշվ-*

ված է, որ համաշխարհային ռազմական ծախսերի միայն մեկ տոկոսով հնարավոր կլինի ապահովել 200 միլիոն սովյալ երեխաների ապրուստի պայմանները: Այդ ծախսերի 8—10 տոկոսը կփրկի աշխարհի 800 միլիոն սովյալներին: Այդ առթիվ Լեհական միացյալ բանվորական կուսակցության X համագումարում ընկեր Մ. Ս. Գորբաչովը նկատեց, որ չի կարելի «հաշտվել այն բանի հետ, որ վիթխարի ֆինանսական միջոցներ են ծախսվում զենքի համար, մինչդեռ աշխարհում հարյուր միլիոնավոր մարդիկ սովի են մատնված և տարեկան միլիոնավոր մարդիկ են մեռնում սովից»: Այսօր աշխարհում կուտակվել է 50 հազար միջուկային լիցք, որը կարող է 67 անգամ մոխրակույտի վերածել մեր մոլորակը: Աշխարհը միջուկային աղետից փրկելու, միջուկային զենքի կուտակումը դադարեցնելու, ռազմական մրցավազքը սանձահարելու, պետությունների միջև վստահությունն ու խաղաղ գոյակցությունն ամրապնդելու համար հետևողական ու եռանդուն պայքար է ծավալում Սովետական Միությունը, որը միակողմանի ստանձնել է առաջինը միջուկային զենք չգործադրելու պարտավորություն՝ կրկին հավաստելով, որ պատերազմի սպառնալիքը վերացնելու, մարդկային քաղաքակրթությունը փրկելու նկատմամբ հոգատարությունը գլխավորն է իր միջազգային քաղաքականության մեջ:

Ջգտելով աջակցել միջուկային զինանոցների մեծացման վտանգավոր մրցության դադարեցմանը և ցանկանալով բարի օրինակ ցույց տալ՝ Սովետական Միությունը 1985 թ. օգոստոսի 6-ից միակողմանի կիսամյա մորատորիում հաստատեց բոլոր միջուկային պայթեցումների վրա: Վաշինգտոնի վարչակազմին առաջարկվեց հետևել այդ օրինակին, մորատորիումը դարձնել փոխադարձ: Դա թույլ կտար կտրուկ արգելակել միջուկային սպառազինությունների մրցավազքը, դադարեցնել միջուկային զենքի կատարելագործումը և նոր տեսակների ստեղծումը:

Սակայն Ռեյգանի վարչակազմը պատասխանեց Նևադայի նահանգում նոր միջուկային փորձարկումներով: Նոր տարվա, 1986 թվականի նախօրեին, Սովետական Միությունը հայտարարեց, որ միջուկային փորձարկումների վրա հաստատված մորատորիումը երկարաձգվում է ևս երեք ամսով, այսինքն՝ մինչև 1986 թ. մարտի 31-ը: ԱՄՆ-ի պրեզիդենտը այս անգամ էլ պատասխանեց միջուկային նոր փորձարկումներով:

1986 թ. մայիսի 14-ին հեռուստատեսությամբ ունեցած իր ելույթում ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Սովետական կառավարությունը, կշռադատելով իր ժողովրդի և ամբողջ մարդկության անվտանգության հետ կապված բոլոր հանգամանքները, որոշում է ընդունել միջուկային փորձարկումների իր միակողմանի մորատորիումը երկարաձգել մինչև 1986 թ. օգոստոսի 6-ը»: Սովետական Միության այդ խաղաղասիրական առաջարկություններին Ռեյգանը նորից պատասխանեց Նևադայի հրաձգարանում միջուկային նոր փորձարկումներով: Ընդհանուր առմամբ, 1985 թ. օգոստոսի 6-ից մինչև 1986 թ. օգոստոսի 6-ը ԱՄՆ-ը կատարել է 18 միջուկային փորձարկում: Ռեյգանի վարչակազմի այդ քայլերը ցասում և վրդովմունք են առաջացնում ամբողջ աշխարհում, այդ թվում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում: Ամերիկյան կառավարության այդ անպատասխանատու վերաբերմունքը բացահայտ մարտահրավեր է ոչ միայն Սովետական Միությանը, այլև բոլոր մայրցամաքների ժողովուրդներին: ԱՄՆ-ում և ուրիշ երկրներում ցուցարարները Ռեյգանին անվանում են «խաղաղության և մորատորիումի ամենաոխերիմ թշնամի»:

Սովետական Միությունը միջուկային զենքի փորձարկումների արգելման պրոբլեմն այսօրվա առավել անհետաձգելի խնդիրներից մեկն է համարում: Ելնելով դրանից, մեր երկիրը կոչ է անում՝ ամենայն պատասխանատվությամբ կշռադատել մարդկության վրա կախված վտանգի չափը, գործով ցուցադրել հոգատարությունը մարդկանց կյանքի և առողջության նկատմամբ:

Միջուկային փորձարկումները վերջնականապես արգելելու համար սովետական ղեկավարը միաժամանակ Ռեյգանին առաջարկեց անհապաղ հանդիպում ունենալ Եվրոպայի ցանկացած պետության մայրաքաղաքում կամ, ասենք, Հիրոսիմայում, որի վրա քառասունմեկ տարի առաջ գցված ամերիկյան առաջին ատոմային ռումբի զոհը դարձան 350 հազարից ավելի մարդ: Կասկած չկա, որ ամեն տեսակ միջուկային պայթեցումների վերաբերյալ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխադարձ մորատորիումը լավ օրինակ կծառայեր միջուկային զենք ունեցող նաև մյուս պետությունների համար: Դա կհամապատասխաներ բոլոր ժողովուրդների իղձերին և ցանկություններին: Ելնելով խաղաղության պահպանման շահերից և ձգտելով առավելագույն նպաստավոր պայմաններ ստեղծել միջուկային զենքի փորձարկումների դադարեցման համար, ՍՍՀՄ-ը վերջերս հանդես եկավ մի նոր նախաձեռնությամբ: Օգոստոսի 18-ին հեռուստատեսությամբ արած հայտարարությունում Մ. Ս. Գորբաչովը նշեց. «ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն և սովետական կառավարությունը որոշում ընդունեցին միջուկային պայթեցումների նկատմամբ միակողմանի մորատորիումը երկարաձգել մինչև 1987 թվականի հունվարի 1-ը»: Բարի կամքի այս ակտով Սովետական Միությունը նոր ծանրակշիռ ավանդ է մուծում խաղաղության պաշտպանության գործում:

Համաշխարհային հասարակայնության շրջանում առանձնակի տագնապ է առաջացնում Ռեյգանի «աստղային պատերազմների» միլիտարիստական պլանը՝ տիեզերքի ռազմականացումը: Սովետական Միությունը համոզված է, որ տիեզերքը՝ մարդկության ընդհանուր սեփականությունը, պետք է ծառայեցվի ոչ թե պատերազմին, այլ խաղաղությանն ու ժողովուրդների տնտեսական ու սոցիալական առաջադիմությանը: ՍՍՀՄ-ը բազմիցս դիմել է ԱՄՆ-ի կառավարությանը՝ առաջարկելով ոչ միայն դադարեցնել տիեզերքի ռազմականացումը, այլև արգելել և միմյանց տարածքներին հասնող իրենց միջուկային սպառազինությունները կրճատել 50 տոկոսով: Հենց դա կկանխեր տիեզերքի ռազմականացումը, որից այնքան համառորեն կառչել են ԱՄՆ-ի պրեզիդենտը և մյուս պետական ու ռազմական գործիչները: Սովետական Միությունը վճռականորեն պահանջում է թույլ չտալ, որ որևէ զենք թափանցի տիեզերք: «Տիեզերքի ուսումնասիրությունը և յուրացումը պետք է իրականացվի միայն խաղաղ նպատակներով՝ գիտության և արտադրության զարգացման համար բոլոր ժողովուրդների պահանջմունքներին համապատասխան»,— ասված է ՍՄԿԿ ծրագրում: Խաղաղության պահպանման շահերից ելնելով՝ Սովետական Միությունը բազմիցս առաջարկել է կնքել միջազգային հարաբերություններում փոխադարձաբար ռազմական ուժ չգործադրելու պայմանագիր, անհապաղ բանակցություններ սկսել երկու ռազմական դաշինքների մասնակիցների միջև ոչ միայն միմյանց վրա հարձակում չգործելու համար, այլև պայմաններ ստեղծել միաժամանակ ցրելու ինչպես Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների դաշինքը, այնպես էլ ՆԱՏՕ-ի բլոկը:

Որպես առաջին քայլ առաջարկվում է միաժամանակ կրճատել երկու կողմերի միջուկային պետությունների ռազմական բյուջեները՝ նախապես համաձայնեցված ընդհանուր չափով: Սովետական Միությունն այն համոզմանն է, որ պետք է իրականացնել ոչ միջուկային պետությունների անվտանգության երաշխիքների ամրապնդման միջոցառումներ՝ ներառյալ հրաժարումը միջուկային զենքի գործադրումից այն պետությունների դեմ, որոնք միջուկային զենք չունեն և իրենց տարածքում այդպիսիք չեն պահում: Առաջարկվում է ոչ միայն լիովին արգելել միջուկային զենքի փորձարկումները, այլև քանակապես ու որակապես սառեցնել միջուկային սպառազինությունները, արգելել տիեզերական տարածության ռազմականացումը, համաշխարհային մասշտաբով արգելել ու վերացնել քիմիական զենքը:

Վերջերս ԱՄՆ-ի կառավարությունը ձեռնարկեց ևս մի քայլ, որը նորից բացահայտեց ամերիկյան ներկա արտաքին քաղաքական կուրսի վտանգավոր էությունը: Պրեզիդենտ Ռեյգանը ս. թ. մայիսի 27-ին հայտարարեց, որ ԱՄՆ-ը փաստորեն հրաժարվում է ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման սովետա-ամերիկյան պայմանագրային իրավական փաստաթըղ-

թերի՝ 1972 թվականի ժամանակավոր համաձայնագրի և 1979 թվականի ՍՍՍ—2 պայմանագրի հետագա պահպանումից։ «Պրեզիդենտի որոշումը,— ասված է սովետական կառավարության հունիսի 2-ի հայտարարության մեջ,— նշանակում է, որ ամերիկյան ներկա ղեկավարությունը բացառիկ վտանգավոր միջոցառման է դիմել այն պայմանագրային համակարգի կազմալուծման գործում, որը զսպում էր միջուկային սպառազինությունների մրցավազքը և դրանով իսկ պայմաններ ստեղծում նոր պայմանավորվածությունների կնքման համար»։ ԱՄՆ-ի կառավարության այդ քայլը՝ համաձայնագրերի խախտումը, վրդովմունք և զայրույթ է առաջացրել ամբողջ աշխարհում։ Նույնիսկ ԱՄՆ-ի շատ սենատորներ Ռեյգանի գործողությունները անվանել են «ամենալուրջ սխալը Սպիտակ տանը նրա գտնվելու ամբողջ ժամանակաշրջանում»։

ՍՄԿԿ-ն իր միջազգային գործունեության հիմնական ուղղություններից մեկը համարում է եվրոպականը։ Չէ որ Եվրոպան մարդկության պատմության մեջ ամենաահավոր պատերազմների աղբյուրն է եղել։ Եվ եթե Եվրոպայի ժողովուրդները վերջին 40 տարիներին չեն տեսել ոչ մի արյունահեղություն, ապա հիմնականում պարտական են Սովետական Միությանը, նրա լենինյան խաղաղասիրական քաղաքականությանը։

Սակայն ամերիկյան իմպերիալիզմի հանցանքով այսօր Եվրոպան դարձել է աշխարհի ամենալարված օջախներից մեկը։ «Այստեղ այնքան միջուկային զենք է կուտակված, որ մեր խիտ բնակեցված մայրցամաքը, բառիս բուն իմաստով, դարձել է մոլորակի ամենապայթյունալի վայրը»,— Բուդապեշտում ընդգծեց Մ. Ս. Գորբաչովը։

Դժվար չէ հասկանալ, թե ինչու հենց Եվրոպայի ապագան է առանձնակի տագնապ պատճառում։ Չի կարելի անտարբեր նայել իրադարձությունների նման զարգացմանը։ Անհրաժեշտ են կոնկրետ միջոցառումներ, ռեալ քայլեր՝ Եվրոպայում իրադրությունը կայունացնելու, պատերազմի սպառնալիքը վանելու համար։

Այդ առումով համաշխարհային մեծ նշանակության իրադարձություն էր 1986 թ. հունիսի 10—11-ը Բուդապեշտում տեղի ունեցած բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության Վարշավայի պայմանագրի մասնակից 7 սոցիալիստական պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը։ Ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում նշեց Մ. Ս. Գորբաչովը, խորհրդակցության բոլոր մասնակիցները համակարծիք էին այն բանում, որ իրադրությունը մնում է բարդ, առայժմ լարվածության թուլացման մասին խոսելու հիմքեր չկան։ Դրա հիմնական պատճառը ԱՄՆ-ի վարչակազմի անխոհեմ քաղաքականությունն է, որով հաջորդաբար մերժվեցին սովետական խաղաղասիրական ամենահրատապ տասնյակ առաջարկություններ, այդ թվում՝ միջուկային զենքը փուլ առ փուլ վերացնելու, միջազգային անվտանգության համընդգրկուն համակարգ ստեղծելու գաղափարը, Եվրոպայից միջին հեռահարության հրթիռների հեռացման վերաբերյալ համաձայնության գալու հնարավորությունը, միջուկային փորձարկումների ու տիեզերքի ռազմականացման դադարեցումը և այլն։

Չի կարելի իմպերիալիզմի ձեռքը հանձնել աշխարհի բախտը, թույլ տալ, որ իմպերիալիստական հետադիմությունը հաջողվի մարդկությանը պարտադրել ռազմաքաղաքական առճակատման խորացումը։ Դա կնշանակեր միայն մեկ բան՝ սողք դեպի միջուկային պատերազմ, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում։ Այդպիսի հետևության հանգեցին Բուդապեշտի քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության բոլոր մասնակիցները։ Վարշավայի պայմանագրի պետությունները այն միահամուռ կարծիքին են, որ անհրաժեշտ են էլ ավելի մեծ դինամիզմ, համարձակ մոտեցում ինչպես հին, այնպես էլ նոր այն պրոբլեմների նկատմամբ, որոնք կապված են պատերազմի սպառնալիքի դեմ, միջպետական հարաբերություններում խաղաղ գոյակցության հաստատման համար մղվող պայքարի հետ։

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների Քաղաքական



կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության ընթացքում լիովին պաշտպանություն գտավ խաղաղությունն ամրապնդելու, զանգվածային ոչնչացման զենքը վերացնելու, միջազգային անվտանգության համապարփակ համակարգ ստեղծելու ՍՄԿԿ XXVII համագումարի, մյուս եղբայրական կուսակցությունների համագումարների արտաքին քաղաքական գիծը։

Խորհրդակցության էական արդյունքը եղավ Վարշավայի պայմանագրի երկրների դիրքորոշումների և պրակտիկ գործողությունների հետագա համաձայնեցումն ընթացիկ քաղաքականության այնպիսի հիմնական պրոբլեմների առթիվ, ինչպիսիք են միջուկային փորձարկումների դադարեցումը, եվրոպական գոտում սովետական ու ամերիկյան միջին հեռահարության հրթիռների իսպառ վերացումը փոխադարձ հիման վրա, սովետա-ամերիկյան բանակցությունները միջուկային ու տիեզերական սպառազինությունների վերաբերյալ, քիմիական զենքի վերացումը, միջուկային էներգետիկայի անվտանգ զարգացման միջազգային ռեժիմի ամրապնդումը։

Հատուկ նշանակություն ունի Եվրոպայում զինված ուժերի և սովորական սպառազինությունների լայնամասշտաբ կրճատման (Ատլանտիկայից մինչև Ուրալ) համատեղ նախաձեռնությունը։ Խորհրդակցությունում այս հարցի առթիվ ընդունված դիմումը մեծապես լրացնում և ամրապնդում է միջուկային զենքի և զանգվածային ոչնչացման մյուս զինատեսակների լիակատար վերացման ծրագիրը։

Հաշվի առնելով սոցիալիստական երկրների նոր խաղաղ հարձակման արձագանքը՝ ՆԱՏՕ-ի երկրների մայրաքաղաքներում հարկ չհամարեցին գործել սովորական ձևով, երբ Արևելքի ամեն մի խաղաղ նախաձեռնություն անմիջապես հայտարարվում է «Մոսկվայի պրոպագանդա»։ Նույնիսկ Ռեյգանը հայտարարեց, որ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների առաջարկները «շուտով կուսումնասիրի»։ Սակայն մեր ժամանակը պահանջում է ոչ թե «ուսումնասիրել», այլ ջանքեր գործադրել մարդկությանը միջուկային աղետից փրկելու համար։

Միջազգային իմպերիալիզմի հանցանքով լարվածության նոր օջախ է դարձել նաև Ասիա—Խաղաղօվկիանոսյան ռեգիոնը։ ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան և իմպերիալիստական մյուս տերությունները այդ ռեգիոնը դարձրել են միջուկային զենքի փորձարկումների պոլիգոններ։ Նրանք այստեղ ունեն հարյուրավոր ռազմական բազաներ, հրթիռամիջուկային պահեստներ։ Ավելին, նրանք ստեղծել են նաև մի քանի ռազմական բլոկներ, նախապատրաստվում են առաջիկայում ստեղծել Վաշինգտոն—Տոկիո—Սեուլ առանցքը, «Խաղաղօվկիանոսյան համագործակցությունը» և այլն։

Վերջերս Վլադիվոստոկում ունեցած իր ելույթում Մ. Ս. Գորբաչովն ընդգծեց, որ Սովետական Միությունը Ասիայում ու Խաղաղ օվկիանոսում ռազմական խմբավորումները ցրելու և օտարերկրյա բազաներից հրաժարվելու, ուրիշների տերիտորիաներից զորքերը դուրս բերելու համոզված կողմնակից է։ Սովետական Միությունը պահանջում է դադարեցնել օվկիանոսում ամեն տեսակի միջուկային փորձարկումները, Խաղաղ օվկիանոսը հայտարարել միջուկազերծ գոտի։

Միջազգային իմպերիալիզմի հանցանքով աշխարհը թևակոխել է սպառազինությունների մրցավազքի մի այնպիսի փուլ, երբ մեր ժամանակների արմատական հարցերի լուծումից խուսափելը նշանակում է խաղաթղթի վրա դնել ամբողջ մարդկային քաղաքակրթության բախտը։ Ներկա պայմաններում ոչ մի պետություն կամ պետությունների խումբ չի կարող սեփական անվտանգությունը կառուցել այն բանի վրա, որ ռազմական ուժի միջոցով իր կամքը թելադրի մյուս երկրներին ու ժողովուրդներին։

Մեր ժամանակների արմատական խնդիրն է՝ պաշտպանել խաղաղությունը, դադարեցնել սպառազինությունների մրցավազքը, անցնել զինաթափման կոնկրետ միջոցների՝ ամենից առաջ միջուկային բնագավառում։ Պատերազմի վտանգի վերացման, միջուկային աղետի ճանապարհը փակելու համար բազմակողմանիորեն կշռադատելով ստեղծված իրադրությունը, XXVII համագու-

մարում նշեց Մ. Ս. Գորբաչովը, ՍՄԿԿ-ն առաջադրեց մինչև ներկա հազարամյակի վերջը մասսայական ոչնչացման զենքը լրիվին վերացնելու մի ամբողջական՝ իր մասշտաբներով ու նշանակությամբ պատմական ծրագիր: Դրա իրագործումը մարդկության առջև կբացեր զարգացման սկզբունքորեն այլ շրջան, միայն արարման վրա կենտրոնանալու հնարավորություն: Սովետական կառավարությունն այդ նոր խաղաղասիրական առաջարկություններով դիմել է ոչ միայն ավանդական դիվանագիտական ուղիներով, այլև անմիջականորեն համաշխարհային հասարակական կարծիքին, ժողովուրդներին: Սովետական Միությունն առաջարկում է երրորդ հազարամյակ թևակոխել առանց միջուկային զենքի՝ փոխադարձաբար ընդունելի և խստիվ վերահսկելի համաձայնությունների հիման վրա. գործել փուլ առ փուլ և հետևողականորեն, միջուկային զենքից Երկրի ազատումը իրականացնել և ավարտել առաջիկա 15 տարիների ընթացքում՝ մինչև հաջորդ հազարամյակի սկիզբը:

Մարդկության բուն գոյությանը մեր օրերում հարաճուն սպառնալիք է ներկայացնում իմպերիալիզմը: Նրա ամենահրեշավոր ծնունդը ռազմամոլությունն է, որը ձգտում է իրեն ենթարկել բուրժուական հասարակության ամբողջ քաղաքական մեքենան, վերահսկողության տակ առնել նրա հոգևոր կյանքն ու մշակույթը: Հենց իմպերիալիզմն է պատասխանատվություն կրում մեր դարի պատերազմների ու կոնֆլիկտների համար, սպառազինությունների մրցավազքի սանձազերծման և խթանման, այդ մրցավազքի նոր ուղղությունների բացման համար: Իմպերիալիզմն առաջինը գործադրեց միջուկային զենքը: Նա այժմ պատրաստվում է անելու նոր, թերևս անուղղելի քայլ՝ սպառազինությունների մրցավազքը փոխադրել տիեզերք: Իմպերիալիզմը մարդկությանը հրում է դեպի ջերմամիջուկային աղետի անդունդը, որն սպառնում է ոչնչացնել երկրագնդի վրա եղած կենդանի ամեն բան:

Պատերազմի ու խաղաղության պրոբլեմը ներկայումս մարդկության առջև ծառացած ամենասուր պրոբլեմն է: Դեռ երբեք այնքան սպառնալից չի եղել պատերազմի վտանգը, որքան այժմ: Բայց և խաղաղության պահպանման ու ամրապնդման հնարավորությունները երբեք այնքան մեծ չեն եղել, որքան հիմա: Խաղաղության ուժերի պոտենցիալն աճում է օր-օրի: Խաղաղության պահապանն են սոցիալիստական պետությունների ակտիվ, հետևողականորեն խաղաղասիրական քաղաքականությունը, նրանց տնտեսական ու պաշտպանական ամրապնդվող հզորությունը: Խաղաղության կողմն է Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի պետությունների գերակշիռ մեծամասնությունը: Խաղաղության կողմն են բոլոր մայրցամաքների ամենալայն ժողովրդական զանգվածների հակապատերազմական շարժումները: Եվ որքան էլ մեծ լինի պատերազմի սպառնալիքը, ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ համաշխարհային պատերազմի ճակատագրական անխուսափելիություն չկա: Պատերազմը կանխել, մարդկությանը աղետից փրկել կարելի է: Սրանում է սոցիալիզմի, մեր մոլորակի բոլոր առաջադեմ, խաղաղասեր ուժերի պատմական կոչումը:

Մեր կուսակցության արտաքին քաղաքական ստրատեգիայի գլխավոր նպատակն է՝ սովետական ժողովրդի համար ապահովել կայուն խաղաղության պայմաններում ստեղծագործելու հնարավորություն: Ուստի միջուկային վտանգի, սպառազինությունների մրցավազքի դեմ, համաշխարհային խաղաղության պահպանման ու ամրապնդման համար մղվող պայքարն առաջիկայում ևս կմնա որպես միջազգային ասպարեզում ՍՄԿԿ-ի գործունեության գլխավոր ուղղությունը:

«Պատերազմի դեմ մղվող ճակատամարտում պետք է անպայման հաջողության հասնել,— նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում:— Հաջողություն, որը կդառնա բովանդակ մարդկության, յուրաքանչյուր մարդու պատմական հաղթանակը երկրի վրա: Այդ ճակատամարտին ակտիվորեն մասնակցելը ՍՄԿԿ-ն համարում է իր արտաքին քաղաքական ստրատեգիայի բուն էությունը»:

---



# ԿՈՒՍԽՄԲԵՐԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ՎԱՂՐԱՄՅԱՆ**
ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի կազմբաժնի վարիչ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱԴՐԱԾ ԱՐԴԻ խնդիրների լուծման գործում չափազանց մեծ է կուսխմբերի տեղն ու դերը: Չէ որ նրանք անմիջականորեն գտնվում են աշխատավորական կոլեկտիվների խորքում, մշտապես առնչվում են նյութական բարիքներ ստեղծող մարդկանց հետ, քաջատեղյակ են նրանց գործերին և հոգսերին, արտադրության վիճակին ու նեղ տեղերին: Եվ զուր չէ, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը խնդիր դրեց հաստատակամորեն շարունակել կուսակցական ստորին օղակներին ցույց տրվող օգնությունը: Մեկնակետ ունենալով կուսակցության պահանջները՝ ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում կուսխմբերի գործունեության բարելավմանն ու աշխուժացմանը, նրանց ուժերն ու ջանքերը նպատակամղում սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության մշակած խոշորամասշտաբ ծրագրի իրականացմանը:

Գաղտնիք չէ, որ կուսխմբերի աշխատանքի արդյունավետությունը պայմանավորված է նրանցում ընդգրկված կոմունիստների համախմբվածությամբ, նախաձեռնությամբ և ակտիվությամբ: Դրա համար կուսկազմակերպությունները կիրառում են զանազան ձևեր ու մեթոդներ: Մեզ մոտ հատկապես լայն տարածում է ստացել կոմունիստների հաշվետվությունների քննարկման պրակտիկան: Դրանց մեծ մասն իրականացվում է կուսխմբերում: Կողբի սովխոզի խմբերում, օրինակ, վերջին մեկուկես տարում քննարկվել է 14 կոմունիստի հաշվետվություն: Գործարար մթնոլորտում է անցել ընթացիկ տարվա հունվարին մեքենատրակտորային հավաքակայանի կուսխմբում մեխանիզատոր Գ. Խասիկյանի հաշվետվության քննարկումը գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման ասպարեզում կատարած աշխատանքի մասին: Դրա շարժառիթը կուսշրջկոմի բյուրոյում գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման ընթացքի քննարկումն էր և ընդունված որոշման մեջ սովխոզի հասցեին եղած քննադատությունը:

Իրենց գործընկերոջ հաշվետվության առթիվ կոմունիստներ Ա. Ավագյանը, Մ. և Գ. Ղարախանյանները, Հ. Ղարագյոզյանը նշեցին, որ տեխնիկայի նորոգման գործում դանդաղկոտությունը հետևանք է տրակտորիստների մի մասի ցածր պատասխանատվության. նրանք անձամբ չեն մասնակցում նորոգման աշխատանքներին: Կոմունիստները քննադատեցին Գ. Խասիկյանին այն բանի համար, որ իրեն ամրացված գութանը ժամանակին չի տեղափոխել նորոգման կետ, և անբավարար մասնակցության հետևանքով ուշանում է նաև մամլող-հակավորող մեքենայի ու շարքացանի նորոգումը: Գ. Խասիկյանին հանձնարարվեց արագացնել նորոգման աշխատանքները, սահմանվեցին կոնկրետ ժամկետներ: Կուսխմբի կազմակերպիչ Վ. Սիմոնյանն ուժեղացրեց վերահսկողությունն այդ գործի նկատմամբ: Նա կոմունիստ վարպետ-դաստիարակներին հանձնարարություն տվեց ստանձնել մեկական երիտասարդ մեխանիզատորի շեֆությունը: Դրանից հետո տեխնիկայի նորոգման աշխատանքը նոր թափ ստացավ: Հաշվետվությունից հետո 10 օր անց Գ. Խասիկյանն ավարտեց իրեն ամրացված գյուղատնտեսական տեխնիկայի նորոգումը: Փետրվարի

5-ին արդեն հավաքակայանի տեխնիկան պատրաստ էր գարնանացանին. կողբեցիները շրջանում առաջինն սկսեցին գարնանացանը, ժամանակին ավարտեցին միամյա խոտերի և եգիպտացորենի ցանքը:

Գյուղատնտեսական աշխատանքներն արագացնելու, ոռոգման ջուրն ու պարարտանյութերն արդյունավետ օգտագործելու, բերքահավաքն անկորուստ անցկացնելու, ստորաբաժանման կոլեկտիվի շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքներն աշխուժացնելու հարցերը մշտապես դառնում են Կողբի, Բերդավանի, Դովեղի, Արճիսի, Նոյեմբերյանի սովխոզների կուսխմբերի ժողովների քննարկման առարկան: Երբ անցյալ տարվա սկզբին, օրինակ, Ջեյթունի սովխոզի Լ. Սաֆարյանի ղեկավարած բրիգադում նկատվեցին առանձին բանվորների բացակայություններ, կուսխումբն անմիջապես անհրաժեշտ համարեց քննարկել այնտեղ աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու հարցը: Խմբի ժողովում նշվեց, որ դեռևս նկատվում են անհարգելի բացակայությունների դեպքեր, թույլ են աշխատանքային հանձնումների հաշվառումն ու պահանջկոտությունն առանձին բանվորների նկատմամբ: Այս առթիվ կուսխմբի ժողովում կոնկրետ հանձնարարություններ ստացան բրիգադավարը, կոմունիստները: Որոշում ընդունվեց բրիգադում արմատավորել աշխատանքի կազմակերպման ու խթանման կապալային եղանակը: Այն մեծապես նպաստեց աշխատանքային կարգապահության ամրապնդմանը: Այդ ամենի շնորհիվ բրիգադն զգալի չափով գերակատարեց պտղի արտադրության տարեկան առաջադրանքը:

Անմիջականորեն գտնվելով արտադրական կոլեկտիվների ստորաբաժանումներում՝ կուսխմբերն իրենց գործունեությունը ծավալում են աշխատավոր մասսաների շրջանում, բուն արտադրության ոլորտում, սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման պայքարի առաջամասում: Նրանք համախմբում են արտադրամասերի ու տեղամասերի, բրիգադների ու ֆերմաների մարդկանց ուժերը, ապահովում նրանց ակտիվ մասնակցությունը հիմնարկ-ձեռնարկության, պետական տնտեսության առջև ծառացած տնտեսական ու սոցիալական խնդիրների իրականացմանը:

Հանդիսանալով սկզբնական կուսկազմակերպության ստորին օղակներն ու հիմքը՝ կուսխմբերը կյանքի են կոչում նրա որոշումները, ապահովում արտադրական ստորաբաժանման կոլեկտիվի կուսակցական ղեկավարումը: Ահա թե ինչու կուսշրջկոմը մտահոգված է, որպեսզի նրանք իսկապես դառնան արտադրական կոլեկտիվի ստորին օղակի քաղաքական միջուկն ու ղեկավարը: Վերջին տարիներին կուսխմբերի թիվը սկզբնական կազմակերպություններում անընդհատ աճում է և այժմ հասել է 90-ի: Նրանք, իրոք, մեծ աշխատանք են կատարում կոլեկտիվների առջև ծառացած տնտեսական խնդիրների լուծման գործում: Ահա Հաղթանակի սովխոզի այգեգործական № 11 բրիգադի կուսակցական խմբի օրինակը: Խմբում ընդգրկված են չորս կոմունիստներ: Նրանց կազմակերպիչն է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, բրիգադավար Միհրան Սահակյանը: Խմբի ժողովներում հանձախակի քննարկվում են այգիների էտի, ոռոգման, պարարտացման աշխատանքները կազմակերպված անցկացնելու հերթական խնդիրները, կոնկրետ հանձնարարություններ են ստանում, առաջին հերթին՝ խմբի անդամները: Կոմունիստներն այստեղ նորի, առաջավորի արմատավորման նախաձեռնողներն են: Նրանք առաջինը սովխոզում ձեռնամուխ եղան աշխատանքի կազմակերպման կապալային եղանակի կիրառմանը և այսօր օրինակ են հանդիսանում սովխոզի բոլոր բրիգադների համար: Բրիգադի յուրաքանչյուր անդամ շահագրգռված է բերքատվության բարձրացմամբ, պայքարում է բերքի շռայլումների ու կորուստների կանխման համար: Կոմունիստները հետևում են, որպեսզի այգիների խնամքը, մշակությունը կատարվեն ագրոտեխնիկական ժամկետներում և բարձր որակով: Նրանք հսկիչ կետեր են կազմակերպում բերքահավաքի ժամանակ, վերահսկում ոռոգման գործը, հոգ տանում արևկ-տարաների նորոգման ու ապահովվածության մասին: Կոմունիստներ Ռ. Միսկարյանը, Լ. Մելքոնյանը և Ս. Աբդուլյանը բերքահավաքի օրերին կատարում են 1,5—2 արտադրական նորմա և ընթանում սոցիալիստական մրցության ավանգարդում:

Խմբերում կոմունիստների ակտիվության բարձրացման լավագույն փորձ է կուտակել Բերդավանի սովխոզի կուսակցական կազմակերպությունը: Այստեղ ստեղծված վեց կուսխմբերում ընդգրկված են 29 կոմունիստներ: Նրանք բոլորն էլ ունեն



մշտական և ժամանակավոր հանձնարարություններ, պարբերաբար հաշիվ են տալիս դրանց կատարման մասին: Խմբերում ընդգրկված 23 կոմունիստներ անմիջականորեն պատասխանատվություն են կրում արտադրանքի որակի բարձրացման, խնայողության ռեժիմի կիրառման, ջրի, հողի, պարարտանյութերի արդյունավետ օգտագործման, բերքի անկորուստ հավաքման, տեղափոխման և մթերման, կարգապահության ամրապնդման, հանրային ունեցվածքի պահպանության համար:

Չորս կոմունիստներ են ներգրավված այգեգործական № 8 բրիգադի կուսխմբում (կազմակերպիչ՝ Հ. Հարությունյան): Յուրաքանչյուր տարվա սկզբին խմբի ժողովում նրանք քննարկում են բրիգադի ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու ուղիները և անհատական կոնկրետ հանձնարարություններ ստանում: Անցյալ տարեսկզբին, օրինակ, գյուղմթերքների որակի վերահսկողությունն ու խնայողության ռեժիմի հետևողական արմատավորման աշխատանքը հանձնարարվեց երիտասարդ կոմունիստ, լենինյան կոմերիտմիության մրցանակի դափնեկիր Վ. Չիլինգարյանին, վաստակաշատ այգեգործ, կոմունիստ Բ. Հովհաննիսյանի վրա դրվեց երիտասարդ այգեգործների որակավորման բարձրացման պատասխանատվությունը: Կոմունիստ Ջ. Դիմաքսյանին հանձնարարվեց հետևել բանվորների դաշտային սննդի և հանգստի կազմակերպմանը, նրանց ժամանակին ապահովել բանվորական արտահագուստով ու գործիքներով: Կուսխումբը հանձախակի անդրադառնում է այդ հանձնարարությունների կատարմանը: Բրիգադում այժմ չկան գործալքումներ, բարձրացել է արտադրանքի որակը, դաշտային տնակում կազմակերպվում են բանվորների հանգիստն ու սնունդը: Արդեն անցյալ տարվա առաջին կիսամյակում բրիգադը հաղթող ճանաչվեց սոցիալիստական մրցության մեջ, և տարեվերջին լավ ցուցանիշներ գրանցվեցին նրա անվան դիմաց: Բրիգադն զգալի չափով գերակատարեց խաղողի, պտղի արտադրության և մթերումների, կերի արմատապտղի ու խոտի կուտակման պլանները:

Կուսխմբերի աշխատանքը նոր բովանդակություն ստացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից հետո: Խնդիր դրվեց ապահովել կոմունիստների ակտիվ մասնակցությունը գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների արմատավորմանը և արտադրության տեխնիկական վերազինմանը: Գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու ասպարեզում մեծածավալ աշխատանք են կատարում Այրումի պահածոների գործարանի կուսխմբերը: Գործարանում արմատավորվել է թիթեղյա տարայի արտադրությունը: Այս գործում արժանի ավանդ են ներդրել արտադրամասի կոմունիստներ Հ. Վարդանյանն ու Ա. Աբրահամյանը՝ խմբի կազմակերպիչ Համիկ Ղազարյանի գլխավորությամբ:

Մրգի խորը սառեցման տեխնոլոգիան ներդրվել է սառնարանային արտադրամասում կուսխմբի (կազմակերպիչ՝ հերթափոխի պետ Մ. Անանյան) անդամների նախաձեռնությամբ: Անցյալ տարի խորը սառեցման է ենթարկվել 750 տոննա միրգ: Այստեղ կոմունիստ Ա. Անտոնյանի ջանքերով տեղադրվել է նաև սառեցված մրգի ավտոմատ լցման, կշռման և փաթեթավորման սարքավորում, որի շնորհիվ էապես բարձրացել են արտադրության կուլտուրան, բնակչությանը մատակարարվող մրգի որակը:

Կուսխմբերը հետևողական աշխատանք են տանում սոցիալիստական մրցության կազմակերպման ասպարեզում: Նրանք սերտորեն համագործակցում են արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների հետ: Խմբերն առաջին հերթին մտահոգվում են, որպեսզի արտադրական ստորաբաժանումների, բրիգադների կոլեկտիվներն ստանձնեն կոնկրետ պարտավորություններ, մրցության մեջ մտնեն համապատասխան այլ կոլեկտիվի հետ, անհատական մրցության պայմանագրեր կընքեն բոլոր աշխատողները: Օգտագործվում են սոցմրցության հաղթողների հրապարակային խրախուսման տարբեր ձևեր ու եղանակներ: Կողբի, Արճիսի, Ոսկեվանի սովխոզների կուսխմբերը մտահոգվում են, որպեսզի մրցության ընթացքում խրախուսման նյութական ու բարոյական գործոնները ազդեցություն ունենան աշխատանքի բոլոր բնագավառների վրա: Կողբի սովխոզում, օրինակ, կուսխմբերի առաջարկությամբ անասնապահներին խրախուսելու նպատակով մրցանակներ են սահմանվել ոչ միայն կաթի արտադրության ավելացման, այլև սանիտարական մաքրության ու բարձր որակի համար: Արդյունքներն ամփոփվում են յուրաքանչյուր

ամսվա վերջում, խմբերի հսկողությամբ գրանցվում են դրանք, ապահովվում մրցության և նրանցում հաղթողների խրախուսման հրապարակայնությունը:

Վերջին ժամանակաշրջանում կուսակցական խմբերն ավելի մեծ աշխատանք են կատարում արտադրության կազմակերպման նոր եղանակների, ձևերի ու մեթոդների կիրառման ասպարեզում: Լայնորեն տարածվում է կապալային եղանակը: Կոլեկտիվների զգալի մասում առաջինը աշխատանքի կազմակերպման այդ եղանակին են անցել այն ստորաբաժանումները, ուր գործում են կուսակցական խմբեր: Այժմ կապալային 21 բրիգադներ կամ այդ եղանակով աշխատող կոլեկտիվների 50 տոկոսից ավելին ունեն կուսխմբեր:

Կապալային եղանակով աշխատանքի լավ փորձ է կուտակել Ոսկեվանի սովխոզի կոմունիստ Էմմա Հակոբյանի ղեկավարած ծխախոտագործական բրիգադը: Նա միաժամանակ կուսակցական խմբի կազմակերպիչն է, այդ բրիգադում աշխատող ծխախոտագործների պրոպագանդիստը: Բրիգադն զգալի չափով գերակատարեց ծխախոտի հումքի հանձնման անցյալ տարվա և ամբողջությամբ՝ հնգամյակի առաջադրանքները: Այս տարի ևս լավ բերք է աճեցնում:

Մեծ է կուսխմբերի դերը կոլեկտիվներում կարգապահության ամրապնդման ու պատասխանատվության բարձրացման գործում: Նրանք ամենօրյա աշխատանք են տանում գործալքումները վերացնելու համար, քննարկում աշխատանքից անհարգելի բացակայության ամեն մի դեպք, պահանջկոտություն ցուցաբերում ամեն մի աշխատողի նկատմամբ, խարազանում անկարգապահության դրսևորումները: Աշխատանքի նման հստակ ոճը հատուկ է Ծավարշավանի սովխոզի տրակտորիստների և Ջուջևանի սովխոզի մեքենատրակտորային հավաքակայանի կուսխմբերին: Կոմունիստները Ջուջևանի սովխոզի մեքենատրակտորային հավաքակայանի աչքալույսներն են: Նրանք կուսխմբի կազմակերպիչ Յու. Իսրայելյանի ղեկավարությամբ մշտապես բարձր ցուցանիշներով են կատարում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, ամրապնդում կարգապահությունը, բարձրացնում աշխատանքի որակը:

Վերջին ժամանակաշրջանում զգալի չափով բարելավվել է գաղափարական-քաղաքական աշխատանքն անմիջականորեն արտադրական ստորաբաժանումներում: Կուսխմբերը հետևում են, որպեսզի կանոնավոր կերպով գործեն քաղաքական լուսավորության և տնտեսագիտական կրթության օղակները, ակտիվանա քաղինֆորմատորների ու ագիտատորների աշխատանքը, կոլեկտիվի անդամներն ավելի գործնական մասնակցություն ցույց տան կուսկազմակերպության միջոցառումներին, դասախոսություններին ու զեկուցումներին: Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում կոլեկտիվի անդամների հետ տարվող անհատական դաստիարակչական աշխատանքի ուժեղացմանը, մշտական վերահսկողություն է սահմանվում նրանց վարքագծի նկատմամբ, ովքեր զանցանքներ կամ խախտումներ կատարելու հակում ունեն կամ արդեն կատարել են դրանք: Կուսխմբի միջամտությամբ Արենիի սովխոզի այգեգործական № 3 բրիգադի աշխատողներն անդրադարձան Լ. Սահակյանի վարքագծին. նրա մոտ նկատվել էին ալկոհոլ օգտագործած վիճակում աշխատանքի ներկայանալու դեպքեր: Ընկերական անկեղծ քննադատության մթնոլորտում Լ. Սահակյանն ընդունեց իր սխալը, խնդրեց օգնել՝ շտկվելու: Դաստիարակչական ներգործման շնորհիվ այժմ Լ. Սահակյանն աստիճանաբար շտկվում է, ձգտում հավասարվել բրիգադի առաջավոր մարդկանց: Նման աշխատանք է տարվում Ս. Քուչուկյանի հետ Հաղթանակի, Ս. Մեհրաբյանի հետ՝ Դովեղի սովխոզներում և այլն:

Ալկոհոլիզմը վերացնելու համար արդյունավետ պայքար է ծավալում նաև Զեյթունի սովխոզի մեքենատրակտորային հավաքակայանի կուսխումբը: Այդ հարցը ժամանակ առ ժամանակ քննարկվում է խմբի ժողովում: Կոմունիստներ Ս. Ասլիկյանը, Ս. Ջալալյանը, Ս. Հարությունյանը աշխատավորների շրջանում դաստիարակչական մեծ աշխատանք են տանում սթափությունը կյանքի նորմ դարձնելու համար: Պատահում է՝ կուսխմբերի ձեռնարկած միջոցներից հետո էլ չի ստացվում սպասվելիք արդյունքը: Այդ դեպքում նրանք խախտումներ կատարած կոմունիստների նկատմամբ ցուցաբերում են ավելի խստապահանջ, սկզբունքային վերաբերմունք: Այսպես, Ռ. Ավագյանին վստահված էր Ոսկեվանի սովխոզի ծխախոտի չորանոցների հսկիչի պարտականությունը: Սակայն բազմաթիվ զգուշացումներից ու նկատողությունից հետո էլ նա չվերականգնեց իրեն, անհրաժեշտ պատասխանատվություն



չդրսևորեց հանձնարարված գործի կատարման նկատմամբ, որի հետևանքով եղան հումքի փչացման ու վատնման դեպքեր: Կուսխմբի միջամտությամբ Ռ. Ավագյանն ազատվեց աշխատանքից: Արտադրության մեջ և հասարակական աշխատանքում ավանգարդային դերը չապահովելու, իրենց պարտականությունները կատարելու գործում թերանալու համար կուսխմբերի առաջարկությամբ վերջին մեկ տարում կուսակցական տույժեր են ստացել Ռ. Ամիրաղյանն ու Ս. Անանյանը՝ Նոյեմբերյանի սովխոզում, Ծ. Մելիքյանը՝ Ոսկեվանի, Հ. Աբովյանը՝ Բերդավանի սովխոզում և այլն:

Պահանջկոտությունը, կոմունիստների գործողությունների նկատմամբ սկզբունքային վերաբերմունքը շատ կուսխմբերում զուգորդվում են նրանց նկատմամբ ցուցաբերած հոգատարության հետ: Խմբերն օգնում են, որպեսզի տույժ ստացած կոմունիստները կարողանան ժամանակին ուղղվել, վերականգնեն կորցրած դիրքերը և ընթանան առաջավորների շարքերում: Զեյթունի սովխոզում, օրինակ, երկու տարի առաջ հասարակական հանձնարարություններ կատարելուց խուսափելու, կուսկազմակերպության հասարակական-քաղաքական աշխատանքներին ակտիվ մասնակցություն ցույց չտալու համար կուսակցական տույժեր ստացան Զ. Մանոևյանն ու Ի. Վալին: Սկսվեց նրանց հետ կուսխմբերի աշխատանքի նոր շրջան: Նրանց տրվում էին զանազան հանձնարարություններ, լսվում էր նրանց հաշվետվությունը, ստուգվում էին հանձնարարությունների կատարման արդյունքները: Այդ ձևով բարձրացավ կոմունիստների ակտիվությունը, և կազմակերպությունը որոշում ընդունեց նրանց տույժերի վերացման մասին: Իսկ այսօր Զ. Մանոևյանը տրակտորիստների կուսխմբի կազմակերպիչն է: Դաստիարակչական արդյունավետ աշխատանք են տանում նաև Նոյեմբերյանի սովխոզի կուսխմբերը կոմունիստներ Ռ. Ամիրաղյանի և Ս. Անանյանի հետ: Նրանցից առաջինն այս տարվա փետրվարին կուսակցական տույժ՝ խիստ նկատողություն ստացավ անասունների խնամքն անբավարար կազմակերպելու, անհրաժեշտ մաքրություն չապահովելու և արված դիտողություններից եզրակացություն չհանելու համար: Կուսխումբն ուժեղացրեց վերահսկողությունն ու հոգատարությունը նրա նկատմամբ: Խմբի միջամտությամբ ֆերմայի ղեկավարները Ռ. Ամիրաղյանին ապահովեցին անհրաժեշտ գործիքներով, ցամքարով, կերերի տեղափոխման տրանսպորտով, հաճախակի դարձրին ստուգումները: Գործերը նոր ընթացք ստացան: Ժամանակին սկսեցին մթերվել նախատեսված քաշի հասած անասունները:

Կուսխումբը հաճախակի է տարբեր հանձնարարություններ տալիս Ռ. Ամիրաղյանին, ստուգում դրանց կատարումը: Այսօր ինտենսիվ եղանակով նրա բտած անասնախումբը գտնվում է մաքուր և գեր վիճակում: Ընթացիկ տարում 43 գլուխը մթերվել է 370 կգ միջին կենդանի քաշով: Դա զգալիորեն գերազանցում է սովխոզի միջին ցուցանիշը:

Մեխանիզատոր Ս. Անանյանը կուսակցական տույժ է ստացել արտագնա աշխատանքի մեկնելու և կուսակցական կյանքից կտրվելու համար: Տրակտորիստների կուսակցական խմբի հոգատարության շնորհիվ նա կարողացավ կարճ ժամկետում շտկել սխալները: Նա անցյալ տարվա բերքահավաքի շրջանում իրեն վստահված կոմբայնով անկորուստ կատարեց սովխոզի ամբողջ հացահատիկի բերքահավաքը՝ յուրաքանչյուր հեկտարից ապահովելով 28,7 ցենտներ բերք: Այժմ նրան է վստահվել նաև Տ—100 բուլդոզերը: Ծուտով կոմունիստները կանդրադառնան Ս. Անանյանի կուսակցական տույժը վերացնելու հարցին:

Անժխտելի է կուսակցական ժողովի դերը կոմունիստների դաստիարակության և արտադրական հարցերի լուծման գործում: Դա վերաբերում է նաև կուսխմբերին: Վերջին շրջանում էապես բարձրացել է նրանց ժողովների մակարդակը: Կուսխմբերում ընդգրկված կոմունիստները ավելի հանգամանալից, սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում են քննարկում աշխատանքի արտադրողականության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների արմատավորման, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի ու եղանակների լայն կիրառման, աշխատավորների սոցիալական պայմանների բարելավման և այլ հարցեր: Ծավարշավանի սովխոզի կաթնապրանքային ֆերմայի կուսխմբի առաջարկությամբ այս տարվա մարտին կուսակցական ժողովում քննարկվել է անասունների ցեղի բարելավման հարցը: Այժմ այդ նպատակով իրականացվում են ան-

հրաժեշտ միջոցառումներ, ձեռք են բերվել մեծ թվով սևաբղետ ցեղի մատղաշներ:

Նույն ձևով կուսակցական խմբի առաջարկությամբ կուսբյուրոյում քննարկվել, ապա լուծվել է սովխոզի մեքենատրակտորային համաքակայանում վառելիքի, ավտոմատ լիցքավորման կետի ստեղծման հարցը, վերացել են բենզինի ու այլ հեղուկ վառելիքի կորուստները, կրճատվել լիցքավորման ժամկետները:

Կուսխմբերի հաջողության պայմանը նրանց ճիշտ ղեկավարումն է: Եվ սկզբնական կուսկազմակերպություններն ուժեղացրել են նրանց ցույց տրվող ղեկավարությունն ու օգնությունը: Այրումի պահածոների գործարանի, Արճիսի, Հաղթանակի, Ջեյթունի սովխոզների և այլ սկզբնական կուսկազմակերպություններ ժողովներում ու բյուրոյի նիստերում հաճախակի են քննարկում կուսխմբերի կազմակերպիչների հաշվետվությունները, աշխատանքի տարբեր բնագավառների վերաբերյալ հարցեր, օգնում վերացնելու նկատված թերությունները: Կուսխմբերի կազմակերպիչներն ընդգրկվում են կուսակցական ակտիվի ուսուցման համակարգում, նրանց հետ պարբերաբար անցկացվում են սեմինար-խորհրդակցություններ: Այդ առումով հետաքրքրական է Նոյեմբերյանի սովխոզի կուսբյուրոյի աշխատանքի պրակտիկան: Այստեղ յուրաքանչյուր ամսվա 4-ին կուսբյուրոյի քարտուղարի մոտ հրավիրվող խորհրդակցությունում նախորդ ամսվա աշխատանքի արդյունքներն ամփոփվում և հերթական հանձնարարություններ են ստանում հասարակական կազմակերպությունների ղեկավարները, գաղափարախոսական ակտիվը, կուլտուրայի օջախների ու ֆիզկուլտուրային կազմակերպությունների ղեկավարները, արտադրամասային, բրիգադային կուսկազմակերպությունների քարտուղարները: Այդ խորհրդակցություններին պարտադիր կերպով մասնակից են դարձվում նաև կուսխմբերի կազմակերպիչները, որոնք հաղորդումներ են անում իրենց աշխատանքի մասին, առաջարկություններ ներկայացնում առանձին խնդիրների լուծման վերաբերյալ: Այստեղ էլ անհրաժեշտ դիտողություններ են արվում, հանձնարարություններ տրվում: Խմբերի կազմակերպիչները մասնակից են դարձվում ժողովներում ու բյուրոյի նիստերում քննարկվող հարցերի ու դրանց վերաբերյալ որոշումների նախագծերի նախապատրաստմանը, ընդգրկվում այդ առթիվ կազմակերպվող հանձնաժողովներում:

Աշխատանքի այդ պրակտիկան հատուկ է նաև Բերդավանի, Հաղթանակի, Ջեյթունի, Դովեղի, Արճիսի սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններին: Սակայն արդարությունը պահանջում է ասել, որ մարդկային գործոնի ակտիվացմանը նպաստելով կուսխմբերի կատարած աշխատանքը դեռևս լիովին չի բարձրացել կուսակցության արդի պահանջների մակարդակին:

Հաշվի առնելով կուսխմբերի կուտակած դրական փորձը և առկա թերությունները՝ ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմը վերջին ժամանակաշրջանում ավելի հետևողական աշխատանք է տանում նրանց մարտունակությունը բարձրացնելու, սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը բարելավելու համար: Խմբերի աշխատանքի հարցերը պլանավորված կարգով քննարկվում են շրջկոմի բյուրոյում և բաժիններում: Կուսակցական ակտիվի դպրոցի ուսումնական պլանին համապատասխան՝ պարբերաբար սեմինար-խորհրդակցություններ են անցկացվում կուսխմբերի կազմակերպիչների հետ: Այդ սեմինարներում նրանք պատմում են աշխատանքի տարբեր բնագավառներում իրենց փորձի մասին: Խմբերի աշխատանքը լուսաբանվում է շըրջանային թերթում: Նրանց ժողովներում բարձրացված հարցերն արժանանում են շրջկոմի ուշադրությանը, այդ առթիվ համապատասխան միջոցառումներ են մշակվում: Շրջկոմը տարեկան 2—3 անգամ պլանավորված կարգով ուսումնասիրում է խմբերի աշխատանքը: Արդյունքները շրջկոմի ղեկավարությանն է ներկայացվում զեկուցագրերի, տեղեկանքների ձևով, կատարվում են վերլուծություններ, միջոցներ ձեռնարկվում կուսխմբերի աշխատանքի հետագա բարելավման համար:

ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների որոշումները նոր լիցք են հաղորդել բոլոր կուսակցական օղակների գործունեության հետագա ակտիվացմանը: Ղեկավարվելով կուսակցության որոշումներով՝ ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմը է՛լ ավելի կբարելավի կուսխմբերի հետ տարվող աշխատանքը, ամեն կերպ կբարձրացնի մարդկային գործոնի ակտիվությունը և հետևողականորեն կիրականացնի գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցով էկոնոմիկայի ինտենսիվացման խնդիրները:

---



# ՍԿԶԲՈՒՆՔԱՅՆՈՒԹՅՈՒՆ, ԳՈՐԾԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ, ԱՆՁՆՎԻՐՈՒԹՅՈՒՆ

## (Գ. Կ. ՕՐՋՈՆԻԿԻՁԵԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



ՆՐԱՆ ԲՆՈՒԹԱԳՐՈՂ բազում բառերից այսօր տեղին կլիներ առանձնացնել չորսը. նվիրում, եռանդ, հմտություն, կենսափորձ՝ դրանք համապատասխանորեն զուգակցելով անմնացորդ, անսպառ, մեծ և հարուստ մակդիրներով... Իհարկե, Գրիգորի Կոնստանտինովիչ Օրջոնիկիձեն իրեն վայել համեստությամբ դրանք վերամբարձ ու ավելորդ կհամարեր: Բայց այդ բնութագրերը դիմացել են ժամանակի քննությանը և այսօր՝ նրա ծննդյան հարյուրերորդ ու մահվան հիսուներորդ տարում մենք կրկին ու կրկին կարող ենք հավաստել դրանց պատմական իսկությունը:

Կոմունիստի մարդկային էության մեջ այդ վսեմ գծերի խտացումը, իսկ ավելի ընդհանրացված ձևով՝ ամեն մի կուսակցական կազմակերպության գործունեության մեջ եռանդի ու հմտության միաձուլումը վերստին, որպես էական անհրաժեշտություն, հնչականվեցին բոլշևիկլենինյանների գործը շարունակող կոմունիստների այսօրվա սերունդների կուսակցական համաժողովում: «Ներկա փուլը՝ հասարակության որակական վերափոխման փուլը, կուսակցությունից, նրա յուրաքանչյուր կազմակերպությունից պահանջում է նոր ջանքեր սեփական գործունեության գնահատականներում, սկըզբունքայնություն, գործարարություն և անձնվիրություն»,— շեշտեց Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XXVII համագումարում:

Գ. Կ. Օրջոնիկիձեն գլխովին սուզված էր գործի մեջ և նրա համար չէր կարող նվիրումը թերի լինել, եռանդը՝ սպառվող, և ինչո՞ւ պետք է աշխատող, որոնող, ձգտող և տքնող մարդը հմուտ ու գործարար չլինի, ինչո՞ւ պետք է նրա փորձը չնչին լինի և աղքատիկ:

1927 թվականին, կուսակցության XV համագումարում որոշ ընկերներ գտնում են, որ Օրջոնիկիձեն կենտրոնական վերըստուգիչ հանձնաժողովի և բանվորագյուղացիական տեսչության աշխատանքի մասին զեկուցման մեջ քիչ է խոսել հաջողությունների մասին: Պատասխան խոսքում նա ասում է, թե առանձնապես պարծենալու բան չկա, թե «այն, ինչ արված է առայժմ, դա փոքրիկ մասնիկն է այն հսկայական աշխատանքի, որը սպասվում է առջևում» (Г. К. Орджоникидзе, Статьи и речи, т. 2. М., 1957, стр. 101): Խոսքը աշխատանքային կարգապահության բարելավման, շռայլումների ու չարաշահումների, բյուրոկրատիզմի դեմ

պայքարի մասին էր: Առանձին անհատներ այդ պայքարում ակտիվ են, բացատրում է Օրջոնիկիձեն, մինչդեռ պետք է ընդգրկել աշխատավորական լայն զանգվածներին:

Այդ ժամանակ, 1926—1930 թվականներին, Օրջոնիկիձեն ՀամԿ(բ)Կ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահն էր և ՍՍՀՄ բանվորագյուղացիական տեսչության ժողկոմը: Նրա գործը վերաբերում էր ճշտապահությանն ու կարգապահությանը, ժամանակի արդյունավետ օգտագործմանը, աշխատանքի կուլտուրայի բարձրացմանը, գործարարությանը, չարաշահության ու շռայլումների դեմ պայքարին: Ամեն ոք գիտեր, որ 1926 թվականի նոյեմբերին վերոհիշյալ պաշտոնները Գ. Կ. Օրջոնիկիձեի ստանձնելուց հետո գործերը այդ ասպարեզում սկսել էին բարելավվել: Բայց ահա կուսակցության նահանգային կոնֆերանսներից մեկում, 1927-ի հունվարին, նրան հարց են տալիս՝ իսկ ինչպե՞ս են գործերը ձեզ մոտ՝ ԲԳՏ—ԿՎՀ-ում՝ բյուրոկրատիզմի և թղթատարության դեմ մղվող պայքարում: Օրջոնիկիձեն ուղղամիտ է և ինքնաքննադատ.

— Մեր ապարատը ոչնչով լավ չէ մյուսներից:

Եվ հիշեցնում է՝ Վ. Ի. Լենինը պահանջել է, որ բանվորագյուղացիական տեսչությունը ազատ լինի նման թերություններից, որպեսզի կարողանա օրինակ ծառայել բոլորին, մինչդեռ դրան հասնելու համար դեռ շատ են անելիքները (նույն տեղը, էջ 45): Օրջոնիկիձեն հենց բանվորագյուղացիական տեսչության և սովետական այլ հիմնարկներից բերում է մարդկանց ունկնդրելուց և ընդառաջելուց, նրանց պահանջները բավարարելուց խույս տալու, բյուրոկրատիզմի բազմաթիվ փաստեր: Մինչև իսկ սովետներում, աշխատավորների իշխանության այդ մարմիններում, նկատում է նա, հաստատվել են մարդիկ, որոնք կենդանի աշխատանքի փոխարեն զբաղվում են թղթաբանությամբ, թաքնվում են թղթերի կույտի տակ, ձգտում են գործել ոչ թե մարդկանց հետ ու մարդկանց միջոցով, այլ թղթերի հետ ու թղթերի միջոցով. «Թուղթը հայտարարվում է ամենափրկիչ միջոց: Եվ այստեղ գործը հասնում է այնպիսի ծիծաղաշարժության, որ մարդ սկսում է ինքն իր հետ գրագրության մեջ մտնել: Ընդհանրապես թղթի նկատմամբ մենք բարբարոսորեն անխիղճ ենք վարվում՝ գրում ենք անհաշիվ քանակությամբ» (նույն տեղը, էջ 8): Գրում են հազար ու մի անմիտ, անիմաստ բաներ, կազմում են անտեղի հարցացուցակներ ու անկետային թերթիկներ, որոնք ոչ ոքի էլ պետք չեն: Օրինակ է բերում առողջապահության ժողկոմատի մանկական դիսպանսերում մոր և մանկան համար կազմված անկետային թերթիկների տարօրինակ, ծիծաղաշարժ հարցերը, որոնց թիվը 127-ի է հասնում:

Օրջոնիկիձեի կարծիքով ամենից դժվարը, բայց և ամենից կարևորն ու անհրաժեշտը մարդկանց հետ կենդանի աշխատանքն է: Հակառակ դեպքում՝ ծույլի և թույլի համար գերադասելին թղթի հետ գործ ունենալը չէր լինի: Օրջոնիկիձեն հիշատակում է Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ ցարական բյուրոկրատին պրոլետարիատը վռնդել է դռներից, բայց նա ներս է սողոսկում պատուհանից: Թղթացավի մի տարբերակ էր Գ. Կ. Օրջոնիկիձեն համարում որոշումացավը: Դարձյալ ամեն մի կոնկրետ գործի փոխարեն մեկ, հաճախ էլ մի քանի որոշում, այդ թվում՝ մինչև իսկ լավ որոշում: Հետո ի՞նչ. «Բավական չէ լավ որոշում գրել,— ասում է Օրջոնիկիձեն,— բավական չէ լավ հրահանգ կազմել, պետք է հետևել նրա կատարմանը» (նույն տեղը, էջ 226):

ՍՄԿԿ XXVII համագումարում ցույց տրվեց, որ քիչ չեն բյուրոկրատիզմի, քաշքշուկի, թղթաբանության վերապրուկները նաև մեր օրերում: Դրա համար էլ համագումարը այնպես սուր դրեց գործարարության մակարդակը բարձրացնելու հարցը. «Կկամենայի մեր համագումարում մեկ անգամ ևս ասել **գործարարության** մասին: Դա սկզբունքային հարց է: Ասվածի և արվածի ամեն մի անհամաձայնություն վնաս է հասցնում գլխավորին՝ կուսակցական քաղաքականության հեղինակությանը, և դա չի կարելի հանդուրժել ոչ մի ձևով: Դա պետք է հիշի ամեն մի ղեկավար, ամեն մի կոմունիստ»,— ասվեց Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ:

**Տառապանքի ուղիներով** էր անցել: Այնտեղ էր վարժվել հավատալ, համոզվել, վստահ լինել, որ անհաղթահարելի դժվարություններ չկան, չկան, չեն կարող լինել անլուծելի հարցեր, եթե կա սովորելը, կա որոնելը, յուրաքանչյուր անհաջողությունից և հաջողությունից դաս քաղելը, փորձով իմաստնանալը, մարդկանց հետ մերձենալը, մեծ խմբերով, զանգվածներով ոտքի ելնելն ու առաջ գնալը:



Ծնվել էր սնանկացած ազնվական Կոնստանտին Օրջոնիկիձեի և Եփրակսիա Տավզարաշվիլու հարկի տակ՝ Վրաստանի Շորապանի գավառի Գորեշա գյուղում 1886-ի հոկտեմբերի 12(24)-ին: Փաստաթղթով Կոնստանտին են կնքել, բայց սկզբից էլ Սերգո են կանչել: Ծննդից վեց շաբաթ հետո մահացել է մայրը, և նա մնացել է մոր ու հոր հարազատների խնամքին: Չորս տարի սովորել է հայրենի գյուղի դպրոցում, 1901-ին ընդունվել և 1905-ին ավարտել Թիֆլիսի Միքայելյան հիվանդանոցի բուժակային դպրոցը: Ընթերցասեր պատանին հանույքով սերտում է վագրի հետ Ավթանդիլի մենամարտի ռուսթավելիական հոյակապ նկարագրությունը, կլանում օտար նվաճողների դեմ Գեորգի Սահակաձեի գլխավորած ազատագրական հերոսամարտերի պատմությունները, մինչև սրտի խորքը հուզվում և ոգևորվում Իլյա Ճավճավաձեի, Վաժա Փշավելու, Ակակի Ծերեթելու, Ղազբեգիի և վրաց մյուս դասականների պոեմներով ու բանաստեղծություններով, որոնց առաջ բերած հայրենասիրական-ազատագրական մտքերը պրոլետարական, հեղափոխական իմաստավորում են ստանում Ն. Գ. Չեռնիշևսկու և Ն. Ա. Դոբրոլյուբովի երկերի ընթերցմամբ, Թիֆլիսում ռուս հեղափոխական մարքսիստների հետ շփումների շնորհիվ և նրանց միջոցով ձեռք բերված մարքսիստական գրականության ուսումնասիրմամբ: 1903 թվականին բուժակային դպրոցի սանը մտնում է ՌՍԴԲԿ շարքերը, նվիրվում բոլշևիկյան գաղափարների իրականացման համար մղվող պայքարին: Իրենից չորս տարով մեծ Կամոյի հետ հեղափոխական թերթեր ու թռուցիկներ է տարածում, բուժակի իր աշխատանքը Աբխազիայում հաջողությամբ զուգակցում է ՌՍԴԲԿ կազմակերպություններից մեկի գործունեությունը ղեկավարելու հետ: 1905-ին բանտ է նետվում և ազատվում, ապա մեկնում է Բեռլին՝ ուսման: 1907-ի գարնանը վերադառնում, դարձյալ որպես բուժակ աշխատանքի է անցնում այս անգամ Բաքվի նավթահանքերից մեկում: Այստեղ նա Ալյոշա Ջափարիձեի հետ գլխավորում է բանվորների մայիսմեկյան ցույցը: Շատ չանցած Սերգոն դառնում է Բալախանիի շրջանի բոլշևիկ կազմակերպիչներից մեկը, ընդգրկվում ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի կազմում: Կրկին ձերբակալություն, որին հաջորդած 1907 թվականի նոյեմբերյան ձերբակալությունից հետո դատապարտվում է մշտական աքսորի Սիբիր: Փախչելով հեռավոր աքսորավայրից՝ գալիս է Բաքու և 1909-ի աշնանը հեղափոխական աշխատանքի ուղարկվում Պարսկաստան: Այստեղից նա նամակագրական կապ է պահպանում Վ. Ի. Լենինի հետ: 1910 թ. վերջին մեկնում է Փարիզ, հանդիպում Լենինի հետ, նրան պատմում Բաքվում, Անդրկովկասում և Պարսկաստանում ծավալված հեղափոխական շարժումների և գործիչների մասին: Այնուհետև դառնում է Վ. Ի. Լենինի ստեղծած Լոնժյումոյի կուսակցական դպրոցի ունկնդիր: Լսում է Լենինի երեսուն դասախոսությունները քաղաքատնտեսության, տասը՝ ագրարային հարցի և հինգը՝ սոցիալիզմի տեսության և պրակտիկայի վերաբերյալ:

Վ. Ի. Լենինը Սերգո Օրջոնիկիձեին պատմականորեն կարևոր ու պատասխանատու հանձնարարություն է տալիս՝ վերադառնալ Ռուսաստան և բոլշևիկյան կազմակերպություններում նախապատրաստական լայն աշխատանք տանել առաջիկայում բոլշևիկյան համակուսակցական կոնֆերանս հրավիրելու համար: Այդ քննությունը նա պատվով է բռնում: Ռուսաստան գալով որպես կոնֆերանսի հրավիրման արտասահմանյան կազմակերպական հանձնաժողովի լիազոր՝ նա այցելում է մի շարք կազմակերպություններ, նախաձեռնում կոնֆերանսի հրավիրման Ռուսաստանյան կազմակերպական հանձնաժողովի ստեղծումը և, ընտրվելով այդ հանձնաժողովի կազմում, ղեկավարում է նրա աշխատանքները: Դա մեծ ծառայություն էր կուսակցությանը: 1912-ի հունվարին Պրագայում բացվում է VI համակուսակցական կոնֆերանսը: Նրանում Գ. Կ. Օրջոնիկիձեն հանդես է գալիս զեկուցումներով, ընտրվում է ՌՍԴԲԿ Կենտկոմի և նրա ռուսական բյուրոյի կազմում: Կոնֆերանսը միահամուռ որոշում է կայացնում մենշևիկ լիկվիդատորներին կուսակցության շարքերից վտարելու մասին: Դրանով իսկ վերջ է տրվում միևնույն կուսակցության մեջ մենշևիկների հետ բոլշևիկների ձևական միասնությանը: Որպես կուսակցության Կենտկոմի և նրա ռուսական բյուրոյի անդամ՝ Գ. Կ. Օրջոնիկիձեն Թիֆլիսում, Բաքվում, Մոսկվայում, Կիևում, Պետերբուրգում, Խար-

կովում և այլ վայրերում խոշոր աշխատանք է տանում կոնֆերանսի որոշումները մասսայականացնելու, բոլշևիկների ուժերը միավորելու, նրանց գործունեությունը աշխուժացնելու համար: Ոստիկանության գործակալները բոլոր միջոցները ձեռնարկում են՝ խափանելու համար ականավոր կուսակցական գործչի կազմակերպչական բուռն գործունեությունը: 1912-ի ապրիլին Պետերբուրգում նա ձերբակալվում է, նետվում Շլիսելբուրգյան ամրոց, որտեղից 1915-ի հոկտեմբերին աքսորվում է հեռավոր Իրկուտսկ, ապա՝ Յակուտսկ: Այստեղից նրան վիճակված էր վերադառնալ փետրվարյան հեղափոխությունից հետո միայն: 1917-ի հունիսին իր կնոջ՝ Զինաիդա Գավրիլովնայի հետ Պետրոգրադ վերադառնալիս Օրջոնիկիձեն բերում է նաև փիլիսոփայական, սոցիալ-քաղաքական մշակումների իր ըստվար տետրերը, ինչպես և սեփական մտքերի գեղարվեստական շարադրանքները: Սա ինքնին խոսուն փաստ է: Բանտերում ու աքսորի օրերին ժամանակը ձեռքից բաց չէր թողել: Կարդացել էր Հունաստանի և Հռոմի պատմությունը, Եվրոպայի, Ասիայի և Ամերիկայի ժողովուրդների պատմությունները, ռուսական դասական գրականության գրեթե բոլոր նշանավոր երկերը, Հոմերոսին, Շեքսպիրին, Բայրոնին, Բալզակին, Գյոթեին, Ջեկ Լոնդոնին, Անատոլ Ֆրանսին, Բոմարշեին... Կուտակել էր գիտելիքների այն պաշարը, որը նրան բարոյական իրավունք էր տալու երիտասարդ սերնդի նաև ճաշակի դաստիարակը լինելու և արտադրության մարդկանց հետ խոսելու արտադրանքի գեղագիտական արժեքի մասին, լինելու գործիմաց, հասու խորհրդատու:

Եվ այսպես, 1917 թ. հունիս, Պետրոգրադ. հանդիպում Լենինի հետ: Նրա առաջարկությամբ Օրջոնիկիձեն մտնում է կուսակցության Պետրոգրադի կոմիտեի և Պետրոգրադի սովետի գործադիր կոմիտեի կազմում: Այցելում է Լենինին Ռազլիվ կայարանում, անհրաժեշտ տեղեկություններ է հաղորդում նրան և բերում Կենտկոմին Լենինի հղած ցուցումները, հանձնարարականները: Օրջոնիկիձեն կուսակցության VI համագումարի նախապատրաստական աշխատանքների և բուն համագումարի ակտիվ մասնակիցներից է, վճռականապես դեմ է դուրս գալիս նրանց, ովքեր գտնում են, որ Լենինը պետք է կատարի բուրժուական ժամանակավոր կառավարության կամքը և ներկայանա դատարան: Վ. Ի. Լենինի կյանքը պետք է փրկել՝ հանուն հեղափոխության մոտալուտ հաղթանակի, հանուն Ռուսաստանի ժողովուրդների ազատագրության, հանուն ապագայի. այս է նրա հստակ դիրքորոշումը:

Գ. Օրջոնիկիձեն լիովին նվիրվում է Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի գործին, այնուհետև քաղաքացիական կռիվների ճակատներում նա Հոկտեմբերի արթուն պահապանն է, երիտասարդ սովետական իշխանության ամրապնդման քաջամարտիկը, սպիտակ գվարդիական ուժերի ջախջախման կուսակցական և ռազմական կազմակերպիչներից ու ղեկավարներից մեկը: Այստեղ նրա ըստանձնած պաշտոնների ու լիազորությունների թվարկումն ինքնին շատ խոսուն է:

— 1917-ի դեկտեմբերին նշանակվում է Ուկրաինայի շրջանի ժամանակավոր արտակարգ կոմիսար:

— Սովետական Ռուսաստանի ժողկոմխորհի 1918-ի ապրիլի 9-ի դեկրետով կազմակերպում և գլխավորում է հարավի ժամանակավոր արտակարգ կոմիսարիատը, որն ընդգրկում է Ղրիմը, Դոնի և Թերեքի մարզերը, սևծովյան նահանգն ու սևծովյան նավատորմը, ամբողջ Հյուսիսային Կովկասն ու Բաքուն:

— 1920-ի փետրվարին նշանակվում է Հյուսիսային Կովկասում սովետական իշխանության վերականգնման բյուրոյի նախագահ, մարտին՝ Հյուսիսային Կովկասի հեղափոխական կոմիտեի նախագահ, ապրիլին՝ նորաստեղծ ՌԿ(բ)Կ Կենտկոմի կովկասյան բյուրոյի անդամ, հունիսին՝ Կովկասյան ռազմաճակատի հեղափոխական ռազմական խորհրդի ներկայացուցիչ, աշխատանքային բանակի Կովկասյան խորհրդում:

— 1921 թ. մարտին Օրջոնիկիձեն նշանակվում է Սովետական Ռուսաստանի ներկայացուցիչ Սովետական Վրաստանում, մայիսին՝ առանձին կովկասյան բանակի հեղափոխական ռազմական խորհրդի անդամ:

— 1924-ի փետրվարին նշանակվում է ՍՍՀՄ հեղափոխական ռազմական խորհրդի լիազոր Անդրֆեդերացիայի կառավարությանը կից:

1921 թվականին կուսակցության X համագումարում և հետագա համագումարներում ընտրվում է կուսակցության Կենտկոմի անդամ, 1926-ի հուլիսին՝ Կենտկոմի



քաղբյուրոյի անդամության թեկնածու, սեպտեմբերին՝ կուսակցության Հյուսիսային Կովկասի երկրային կոմիտեի առաջին քարտուղար, որին հաջորդում է 1926-ի նոյեմբերին ՀամԿ(բ)Կ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահ և, ՍՍՀՄ բանվորագյուղացիական տեսչության ժողկոմ նշանակվելու հետ մեկտեղ, ՍՍՀՄ ժողկոմխորհի նախագահի տեղակալ ու Աշխատանքի և պաշտպանության խորհրդի նախագահի տեղակալ նշանակվելը:

1917 թ. դեկտեմբերի 20-ի Վ. Ի. Լենինի ստորագրությունը կրող վկայականում ասվում է, որ Ս. Օրջոնիկիձեն Ուկրաինայի շրջանի ժամանակավոր արտակարգ կոմիսար է նշանակվում այնտեղ գործող բոլոր սովետական կազմակերպությունների թե՛ ռազմական, թե՛ պարենային, թե՛ բանկային և թե այլ գործողությունները միավորելու համար: 1918-ի հունվարի 16-ին Լենինը Օրջոնիկիձեին հեռագրում էր. «Ի սեր աստծո, ձեռնարկեցեք **ամենաեռանդուն** և **հեղափոխական** միջոցներ հա՛ց, հա՛ց և հա՛ց ուղարկելու համար: Այլապես Պիտերը կարող է սովամահ լինել... Տեղեկացնել ամեն օր:

Ի սե՛ր աստծո» (**ԵԼԺ**, հ. 50, էջ 35—36):

Կապը ուղղակի Լենինի հետ էր: Ահա դրամատիկական ինչ իրավիճակների մասին է պատմում Սերգոյի հեռագիրը Վ. Ի. Լենինին.

«11-րդ բանակը չկա: Նա վերջնականապես քայքայվել է: Թշնամին քաղաքներն ու ավանները գրավում է գրեթե առանց դիմադրության... Չկան արկեր ու փամփուշտներ: Փող չկա: Վլադիկավկազն ու Գրոզնին առայժմ ոչ մի փամփուշտ, ոչ մի կոպեկ փող չեն ստացել. վեց ամիս է կռվում ենք՝ փամփուշտի հատն առնելով հինգ ռուբլով»: Եվ հուզմունքից այս տողերին հաջորդում են ոգեշունչ խոսքերը.

«Վլադիմիր Իլյիչ, հաղորդելով Ձեզ այս մասին, հավաստիացնում ենք, որ մենք անհավասար մարտում կմեռնենք, բայց մեր կուսակցության պատիվը չենք արատավորի փախուստով...:

Թանկագին Վլադիմիր Իլյիչ, մահացու վտանգի ժամին Ձեզ ողջույն ենք հղում և սպասում ենք Ձեր օգնությանը» (Г. К. Орджоникидзе. Статьи и речи, т. 1, М., 1957, стр. 66):

Սովետական իշխանություն է հաստատվել Դոնում և Հյուսիսային Կովկասում, Թերեքում, Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում, ձևավորվել են անդրկովկասյան հանրապետությունների կոմունիստական կուսակցությունները, կազմավորվել է Անդրկովկասյան ֆեդերացիան, իրականացել է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության լենինյան գաղափարը: Բոլոր այդ իրադարձություններում Գ. Կ. Օրջոնիկիձեի մասնակցությունը բացառիկ մեծ է ու բացառիկ հերոսական: Նրա հետ, նրա կողքին են Ս. Մ. Կիրովը, Ա. Ֆ. Մյասնիկյանը, Ա. Ի. Միկոյանը, Մ. Դ Օրախելաշվիլին, Ծ. Զ. Էլիավան, Ս. Լ. Սրապիոնյան-Լուկաշինը, Ս. Մ. Տեր-Գաբրիելյանը, Ս. Ա. Աղամալի-Օղլին՝ լենինյանների մի պայծառ համաստեղություն: Այդ իր և նրանց բոլորի անունից է Գ. Կ. Օրջոնիկիձեն ասում. «Մենք Անդրկովկասի ազգությունների՝ վրացիների, հայերի, ադրբեջանցիների անսահման ծաղկման կողմնակից ենք, կողմնակից ենք նրանց մայրենի լեզվի, հարազատ մշակույթի, գրականության ծաղկման: Մենք անկեղծորեն կողմ ենք, որ այդ ժողովուրդների ներքին կյանքը կառուցվի այնպես, ինչպես դա ցանկանում են աշխատավոր զանգվածները» (հ. 1, էջ 214): Եվ ընդգծում է այդ ամենում Սովետական Ռուսաստանի, ռուս պրոլետարիատի օգնելու կամքն ու պատրաստակամությունը:

ԼԱՅՆ ԷԻՆ Գ. Կ. ՕՐՋՈՆԻԿԻՁԵԻ կապերը երկրամասի բոլշևիկ լենինյանների հետ. մեծ է նրա երախտիքը Հայաստանում սովետական իշխանության հաստատման գործում: Հայտնի է նրա խոր ակնածանքը Ստեփան Շահումյանի անվան ու հիշատակի նկատմամբ, որին նա դասում էր «Անդրկովկասի պրոլետարիատի լավագույն ուսուցիչների» շարքը՝ պատկերավոր կերպով բնութագրելով նրան «տեսական մարքսիզմի ծանր հրետանի» բառերով (հ. 1, էջ 242): Հարազատ եղբոր պես ջերմ ու սիրալիր էր Ալեքսանդր Մյասնիկյանի հետ: Լուրջ էր, խոհեմ, միշտ հանգիստ ու հավասարակշռված, հիշում էր Սերգոն իր սիրելի Ալյոշային՝ նրա ողբերգական մահվան կապակցությամբ Թիֆլիսում սգո միտինգում արտասանած ճառում. «Ոչ մի վատատեսություն, ոչ մի նվնվոց և տարակուսանք: Որքա՛ն խորն էր նրա խոսքը՝ հագեցած հաղթանակի նկատմամբ հավատով»: Եվ նա հիշում է, թե ինչպես Մինսկում, 1917-ի նոյեմբերին. երբ Մյասնիկյանը երևում է սովետների

համագումարում, ամբողջ դահլիճը ցնծությամբ ծափահարում է իր հեղափոխական հրամանատարին: Ալյոշան, ասում էր Սերգոն, Հոկտեմբերյան հեղափոխության ծնված գեներալն էր, որը վիթխարի կազմակերպչական տաղանդ դրսևորեց Մոսկվայում, Հայաստանում և Անդրկովկասում կուսակցական և պետական բարձր պաշտոններում. «Ո՞վ չգիտեր Ալյոշա Մյասնիկովին՝ ազգային խաղաղության դրոշակակրին, մեր կուսակցության ոգուն, երիտասարդության բարեկամին, Անդրկովկասի կոմունիստական համալսարանի հիմնադրին» (հ. 1, էջ 253):

Ինչպե՞ս էր Սերգոն արտասվում և ողբում Կամոյի գերեզմանի թարմ հողաթմբի վրա.

«Սիրելի Կամո:

Ես քեզ հանդիպեցի 18 տարի առաջ: Դու ջահել էիր: Դու քո պարտքն էիր համարում բացատրել ինձ՝ ինչպես բոլշևիկ դառնալ, ինչպես պայքարել պրոլետարիատի շահերի համար: Այսօր ստիպված ենք քեզ հրաժեշտ տալ...

Ես չգիտեմ, թե ինչ պետք է ասեմ Լենինին, երբ հանդիպեմ նրան: Մոսկվայից եկած ընկերները մեզ ասում են՝ «Ինչպե՞ս դուք չկարողացաք պահպանել Կամոյին...» (հ. 1, էջ 241):

Եվ այսպես, մտերիմ ընկերների բազում անուններ՝ Սարգիս Կասյան, Անաստաս Միկոյան, Սահակ Տեր-Գաբրիելյան, Սարգիս Լուկաշին-Սրապիոնյան, Սաքո Համբարձումյան, Աշոտ Հովհաննիսյան, Ասքանազ Մռավյան, Հայկ Ազատյան, Սերգո Մարտիկյան, Պողոս Մակինցյան, Արամայիս Երզնկյան... Նրանցից ամեն մեկն ուներ նրա հետ աշխատանքի և փոխադարձ շփման իր պատմությունը, իսկ բոլորը՝ խոր հիացմունքն ու երախտագիտությունը մեծ հեղափոխականի, լայնախոհ ինտերնացիոնալիստի, հոյակապ ընկերոջ ու մարդու նկատմամբ: Անաստաս Միկոյանը հիշում է. «Նրա հոգևոր կերպարը, քաղաքական և փիլիսոփայական հայացքները, նրա ամբողջ ապրելակերպը շատ միասնական, սերտ, ամուր կերպով միահյուսված էին... Նա կուսակցական քաղաքականության և տակտիկայի, կուսակցության և բանվոր դասակարգի պայքարի մեթոդների մեծ գիտակ էր: Սերգոն անսահմանորեն սիրում էր կյանքը, մարդկանց, պայքարը: Նա ակտիվ գործողության մարդ էր...» (Ա. Միկոյան, **Պայքարի ուղիով**, Ե., 1972, էջ 552—553):

Հայաստանում սովետական իշխանության հաստատման առթիվ, երբ Բաքվի պրոլետարիատի հանդիսավոր նիստում հռչակվում է անցյալից ժառանգած տերիտորիալ վեճերի արդարացի լուծման դեկլարացիան, Օրջոնիկիձեն ուրախությունից բացականչում է. «Ավելի ուրախ դահլիճ, քան այս է, հազիվ թե գտնվի երբևիցե» (հ. 1, էջ 139): Դեկտեմբերի 5-ին Հայաստանի հեղկոմի նախագահ Սարգիս Կասյանը ստանում է Օրջոնիկիձեի ուրախալի հեռագիրը. «Երիտասարդ եղբայրական Սովետական Հայաստանի համար կարմիր բանակի կողմից պատրաստված է մեկ մարշրուտային գնացք՝ 40 վագոն հացահատիկով»:

Մեծ ինտերնացիոնալիստը լավ գիտեր հայոց պատմության թե՛ հերոսական և թե ողբերգական էջերը: «Նոր պատմության մեջ,— ասել է նա,— քիչ են այն ժողովուրդները, որոնք ավելի շատ զոհեր կրած լինեն, քան հայերը, և քիչ են այն երկրները, որոնցում այնքան արյուն թափված լինի, որքան Հայաստանում» (հ. 1, էջ 412): Ուստի նա խորապես մտահոգված էր, որ նոր իշխանությունը Հայաստանում խաղաղ, անարյուն հաստատվի և ամրապնդվի, որ հայ բանվորն ու գյուղացին թոթափվեն տարիների արհավիրքներից, որ հայ մտավորականը լծվի նոր կյանքի կառուցմանը: Հայ մտավորականությունը, ասում էր նա, «...տրեխավոր գյուղացու և աշխատավոր բանվորի զավակն է, նա հանցավոր կլինի, եթե զլանա ծառայելու նրա բանվորագյուղացիական իշխանությանը»:

Փոխադարձորեն ջերմ ու մտերմական էին մեծանուն հայ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի և Սերգո Օրջոնիկիձեի կապերը:

1930 ԹՎԱԿԱՆԻ նոյեմբերին Գ. Կ. Օրջոնիկիձեն նշանակվում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության Գերագույն խորհրդի նախագահ, դեկտեմբերին Կենտկոմի պլենումը նրան ընտրում է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, 1932-ի հունվարին նա նշանակվում է ՍՍՀՄ ծանր արդյունաբերության ժողկոմ: Եվ մինչև 1937 թվականի փետրվարը, մինչև իր սխրանքներով լի էպիկական կյանքի վերջին պահը, նա կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման խոշորագույն կազմակերպիչներից և ամենանշանավոր ղեկավարներից մեկն էր: Մեր բազմաթիվ գործարանները, արդյունաբերության նոր ճյուղերը հաճախ ծնվում էին մերկ դաշտում: Դա հրաշք չէր, այլ իրողություն:



1933 թվական, հունվարի 31: Ծանր արդյունաբերության ժողկոմը Դոնեցկի մարզկոմի պլենումում զարմանք է հայտնում. լավա՞ծ բան է, որ բոլշևիկները՝ այն մարդիկ, որոնք կուսակցության մի կոչով հազարավորների էին ուղարկում ռազմի դաշտ, որոնք մինչև իսկ հրացան բռնել չգիտեին, բայց գնում էին և գլխովին ջարդում թշնամուն, հիմա չպետք է կարողանան առաջ մղել, վեր բարձրացնել մետալուրգիայի գործը. «Ես դրան չեմ հավատում»: Եվ վերակառուցման խնդիր է դնում. վերջ պետք է տալ գործարաններում դատարկ բաներով զբաղվելուն, շատախոսելուն, շողոքորթելուն, որովհետև առանց կարգապահության ոչինչ չի ստացվի: Եթե բոլշևիկները աշխատեն բոլշևիկորեն, սիրում էր ասել Օրջոնիկիձեն, ապա նրանք սև մետալուրգիայի ետ մնալու հարցը կլուծեն (հ. 2, էջ 360): Ահա 1934-ի մայիսի 29-ի նրա խոսքերը. «...մեր երկիրը շեշտակի վերելքի վրա է այժմ, մեր արդյունաբերությունը դժվարությամբ է տիրապետում նոր տեխնիկային»:

Վերակառուցում, շեշտակի վերելք և տեխնիկայի տիրապետում. ահա մարդկանց զբաղեցնող մտքերը մեր անցյալի կարևոր փուլերից մեկում: Դրանց թվում էր նաև ռացիոնալացում բառը: Կարևոր, լուրջ բան է ռացիոնալացումը, ասում էր ժողկոմը, բայց զարմանք էր հայտնում, որ Արևմտյան Եվրոպայում, Ամերիկայում լինում է, որ ռացիոնալիզատորին ավելի շատ ուշադրություն են դարձնում, քան մեզանում՝ սոցիալիստական երկրում. «Մեզանում հաճախ շատախոսությունն ավելի շատ է, քան գործը» (հ. 2, էջ 120): Ես համոզված եմ, ասում էր Օրջոնիկիձեն, որ մեր ինժեներներին վաղը նախանձելու է ամբողջ աշխարհը: Ինչո՞ւ: Որովհետև նա նոր գաղափարներ է կենսագործում, հասարակական վերընթացի նոր արահետներ է բացում: Ինժեները գիտությամբ զինված ստեղծագործողն է, որը բնությունը ծառայեցնում է մարդուն, լինելով բանվորի և գյուղացու հոգեհարազատ զավակը՝ լիովին մտահոգված է նրանց աշխատանքը թեթևացնելով, նրանց կյանքը կատարելագործելով: Նա գտնում էր, որ ինժեները իր պատվի գործը պետք է համարի՝ մեզանում արտադրել բոլոր այն մեքենաները, դեռ դրանցից էլ լավերը, որոնք ըստեղծվում են արտասահմանում: Այս տեսանկյունից նա տեխնիկան, մեքենաշինությունը համարում էր մեծ կուլտուրա, ինժեներին, տեխնիկին՝ այդ կուլտուրան մեր կյանքում արմատավորողներ:

Կուլտուրայի տարրերից մեկը, ըստ Օրջոնիկիձեի, խնայողությունն էր, որի տակ նա հասկանում էր մի ամբողջ կոմպլեքս. խնայողություն աշխատանքի, վառելիքի, ֆինանսների, մեքենաների, ժամանակի: Դրանցից կծնվեն նաև բանվորների ամենամսյա, եռամսյակային և տարեկան պարգևավճարները: Պահանջկոտ էր արտադրության ղեկավարների նկատմամբ: Նրանք պետք է ամեն ինչում, նույնիսկ մանրուքներում, օրինակ ծառայեն:

Ժողկոմն այն կարծիքին էր, որ արտադրության ղեկավարը պետք է պատշաճորեն տիրապետի համոզելու արվեստին, որ նրա խոսքն ու գործը չպետք է միմյանցից խզվեն, որ ղեկավարել՝ այդ նախ և առաջ նշանակում է համոզել, մարդկանց տրամադրել, մարդկանց հետ աշխատել, կազմակերպել, նրանց առաջ մղել և վեր բարձրացնել:

Օրջոնիկիձե կոմունիստի ու քաղաքացու կյանքի և աշխատանքի լեյտմոտիվը կուսակցականությունն էր. ծագած բոլոր հարցերի լուծումները գտնել դասակարգի, կուսակցության տեսանկյունից: Եվ մի անգամ չէր նա ասում. «Կուսակցականություն— այս է գլխավորը: Չի կարելի մոռանալ, որ տնտեսավարները շրջապատված են ամեն տեսակի մարդկանցով՝ և՛ մերոնցով, և՛ խորթերով, որոնք փորձում են նրանց վրա ազդել... Կեցցե՛ այն տընտեսավարը, այն դիրեկտորը, այն տեղամասի պետը, ով ունակ է հակադրվել դրան, իր ներքնաշխարհը պահպանել լիովին բոլշևիկյան ձևով»:

Իր անշեղ ու կրքոտ կուսակցականությամբ, իր խոր ինտերնացիոնալիզմով, սովետական հայրենիքի նկատմամբ անսահման սիրով, գործիմացությամբ ու գործարարությամբ կուսակցության և ժողովրդի սիրելի Սերգո Օրջոնիկիձեն այսօր ու առհավետ մեզ հետ է: Իր կյանքի և աշխատանքի օրինակով նա հաստատում է սպասիվությունն ու դանդաղկոտությունը հաղթահարելու, հասունացած խնդիրները արագ ու նոր մոտեցմամբ լուծելու գործարար մեթոդների կիրառման մեր այսօրվա վճռականությունը:

**Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

# ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ԱՍՏՂԱԴԻՏԱԿԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԵՐԱԽՏԱՎՈՐԸ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ աստղաֆիզիկայի բոլոր հաջողությունները, որոնց շնորհիվ էապես հարստացել են մեր գիտելիքներն ու պատկերացումները նյութական աշխարհի՝ տիեզերքի, տիեզերական մարմինների ու երևույթների մասին, պայմանավորված են աստղագիտական գործիքաշինության աննախընթաց զարգացմամբ՝ նոր, հզոր աստղադիտակների ստեղծմամբ:

Սովետական աստղադիտակաշինության բուռն զարգացումն անխզելիորեն կապված է նրա մեծ երախտավոր, սոցիալիստական աշխատանքի հերոս, լենինյան մրցանակի դափնեկիր, տեխնիկական գիտությունների դոկտոր Բագրատ Կոնստանտինի Իոաննիսյանի (Իոաննիսիանի) անխոնջ գործունեության հետ: Այն նշանավորեց մեր աստղադիտակաշինության ամենաբեղմնավոր, ստեղծագործական հասունության և աննախադեպ նվաճումների փուլը, նվաճումներ, որոնք լայն ճանաչում բերին նրան ամբողջ աշխարհում:

Բագրատ Իոաննիսյանը ծնվել է 1911 թվականին, Երևանում: Ժամանակի նշանավոր ինժեներ Կոնստանտին Իոաննիսյանի ընտանիքում նա չորրորդ զավակն էր: Փոքրիկ Բագրատը շատ շուտ զրկվեց ծնողներից՝ սկզբում մորից, այնուհետև՝ հորից: Արդեն 1924 թվականի աշնանը, հոր մահից հետո, նա տեղափոխվում է Լենինգրադ, որտեղ այդ ժամանակ ուսանում էին նրա քույրերն ու եղբայրը:

Լենինգրադում ապրելու առաջին տարիներին Իոաննիսյանների ընտանիքի նյութական վիճակը ծանր էր: Նրա բոլոր անդամները սովորում էին, և ընտանիքի եկամտի միակ աղբյուրը ավագների կրթաթոշակն էր: Ինքը՝ Բագրատը, սովորում էր հանրակրթական իննամյա դպրոցում: Հենց այդ տարիներին Լենինգրադում՝ գիտատեխնիկական մտքի ու զարգացած արդյունաբերության այդ կենտրոնում, պատանի Բագրատը տարվում է տեխնիկայով:

Լենինգրադում բացահայտվեց, իսկ հետագայում վառ կերպով դրսևորվեց Բագրատ Իոաննիսյանի արտասովոր գիտատեխնիկական տաղանդը:

Իննամյա դպրոցն ավարտելուց հետո նա իր աշխատանքային գործունեությունն սկսում է Լենինգրադի «Կրասնայա զարյա» մեքենաշինական գործարանում, ընկղբում որպես բանվոր, իսկ հետագայում՝ գծագրող: Բագրատին ձգում էր ինքնուրույն ստեղծագործական աշխատանքը: Շուտով նա ավարտում է կարճատև կոնստրուկտորական դասընթացները և աշխատանքի անցնում նշանավոր պետական օպտիկամեխանիկական գործարանում, որտեղ նրան տրվում է ստեղծագործական կոնստրուկտորական աշխատանքով զբաղվելու լայն հնարավորություն:

Ինչպես այդ տարիներին, այնպես էլ հետագայում Իոաննիսյանին այլևս չի հաջողվում շարունակել կրթությունը, և կատարելագործման միակ հնարավորությունը նրա համար մնում է ինքնակրթությունը: Թե որքան այն արդյունավետ էր, վկայում է տաղանդավոր կոնստրուկտորի հետագա ստեղծագործական թռիչքը: Պետական օպտիկամեխանիկական գործարանում աստիճանաբար դրսևորվում է Բագրատ Իոաննիսյանի կոնստրուկտորական արտակարգ ձիրքը, որը շուտով գրավում է ականավոր կոնստրուկտոր, սովետական առաջին աստղադիտակի ընտեղծող Նիկոլայ Պոնոմարյովի ուշադրությունը:

Դա մի ժամանակաշրջան էր, երբ մեր աստղագիտական գործիքաշինությունը նոր էր միայն ծնունդ առնում: Լենինգրադի Ս. Ի. Վավիլովի անվան պետական



օպտիկական ինստիտուտում Նիկոլայ Պոնոմարյովի նախաձեռնությամբ կազմակերպվում է աստղագիտական գործիքաշինության հատուկ կոնստրուկտորական խումբ, որում ներգրավվում է նաև Բագրատ Իոաննիսյանը:

Այդ օրվանից Իոաննիսյանն իր ընդունակություններն ու ուժերը անմնացորդ նվիրում է հայրենական աստղադիտակաշինությանը:

Առջևում նոր փորձություններ և դժվարություններ էին սպասում տաղանդավոր երիտասարդին: Սկսվել էր մեծ Հայրենականը՝ մեր ժողովրդի փորձության և անձնվիրության ժամանակաշրջանը: Դադարեցվել էին աստղագիտական գործիքաշինության աշխատանքները: Պատերազմի դեռ սկզբում Իոաննիսյանը կորցնում է իր ավագ ընկերներից շատերին: Թշնամու զորքերով շրջափակված Լենինգրադում վախճանվում է ավագ եղբայրը՝ Անդրանիկը, իսկ ռազմաճակատում քաջաբար զոհվում է Նիկոլայ Պոնոմարյովը:

Պետական օպտիկամեխանիկական գործարանի հետ միասին Իոաննիսյանը էվակուացվում է Կազան: Ինժեներ-կոնստրուկտորը լծվում է պաշտպանական կարևոր նշանակություն ունեցող պատվերների կատարմանը: Այդ գործում նրա աշխատանքն աննկատ չի մնում և նշվում է առաջին կառավարական պարգևով՝ «Պատվո նշան» շքանշանով:

Հայրենական մեծ պատերազմի ավարտից հետո Բագրատ Իոաննիսյանը պետական օպտիկամեխանիկական գործարանի էվակուացված ստորաբաժանումների հետ միասին վերադառնում է Լենինգրադ: Պետական օպտիկական ինստիտուտը նորից դառնում է աստղագիտական գործիքաշինության բնագավառում ծրագրվող աշխատանքների կենտրոն: Իոաննիսյանը կրկին այդ ինստիտուտում է: Հենց այստեղ էլ հիմք է դրվում նրա բեղմնավոր ստեղծագործական համագործակցությանը աստղադիտակների նոր օպտիկական համակարգի ստեղծող, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Դմիտրի Մաքսուտովի հետ:

1949 թ. շարք մտան Բագրատ Իոաննիսյանի ստեղծած առաջին աստղագիտական գործիքները՝ նեբուլյար (միգամածային) սպեկտրոգրաֆը և 25 սմ տրամագծով աստղադիտակ-սպեկտրոգրաֆը, որոնք իրենց վրա կրում էին նրա կոնստրուկտորական տաղանդի կնիքը: Նեբուլյար սպեկտրոգրաֆը, որը ստեղծվել էր Բյուրականի և Ղրիմի աստղադիտարանների պատվերով՝ գազային միգամածությունների սպեկտրների լուսանկարման նպատակով, շատ յուրօրինակ մի սարք էր, իր տեսակի մեջ աշխարհում ամենամեծը:

Ավելի երկար կյանք ունեցավ 25 սմ տրամագծով աստղադիտակ-սպեկտրոգրաֆը, որի առաջին նմուշը տեղակայվեց Բյուրականում, իսկ երկրորդը 1949 և 1950 թվականների ամռանն ու աշնան ամիսներին հաջողությամբ գործում էր Արագած լեռան հարավային լանջին, ծովի մակերևույթից 3.200 մ բարձրության վրա՝ ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիաների համատեղ կազմակերպած էքսպեդիցիաներում (այն հետագայում մշտական «գրանցում» ստացավ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի գլխավոր (Պուլկովոյի) աստղադիտարանում):

Աստղադիտակ-սպեկտրոգրաֆը Բագրատ Իոաննիսյանը ստեղծել էր ականավոր աստղաֆիզիկոս, ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ Օլեգ Մելնիկովի համագործակցությամբ: Վաղուց հայտնի օպտիկական սիստեմի կիրառության շնորհիվ այս աստղադիտակում 25 սմ տրամագծով գոգավոր պարաբոլիկ հայելու վրա ընկնող և նրանից անդրադարձված լույսի փունջը երկրորդ ուռուցիկ պարաբոլիկ հայելու միջոցով, առանց էներգիայի զգալի կորստի, վերածվում է 4 սմ տրամագծով զուգահեռ փնջի, որը այնուհետև տարրալուծվում է կվարցե պրիզմայի միջոցով: Այս սիստեմը հնարավոր դարձրեց աստղերի ուլտրամանուշակագույն ճառագայթման ուսումնասիրությունը, որն ամբողջովին կլանվում է ապակե պրիզմայի կիրառության դեպքում:

Հայրենական աստղադիտակաշինության համար լուրջ նվաճում էր Մաքսուտովի սիստեմի առաջին՝ համեմատաբար մեծ չափերի (հայելու տրամագիծը 660 մմ, իսկ մուտքի բացվածքինը՝ 500 մմ) աստղադիտակի նախագծումը և կառուցումը 1950 թվականին, Ալմա Աթայի աստղադիտարանի համար:

Մաքսուտովի սիստեմի հաջորդ աստղադիտակը Բագրատ Իոաննիսյանը ընտեղծեց 1955 թ. Վրացական ՍՍՀ ԳԱ Աբասթումանի աստղադիտարանի համար: Այդ աստղադիտակը իր տեսակի մեջ աշխարհում խոշորագույնն է (գլխավոր գըն-

դաձև հայելու տրամագիծը 975 մմ, մուտքի բացվածքինը՝ 700 մմ): Լինելով Իոաննիսյանի ստեղծած լավագույն աստղադիտակներից մեկը՝ այն մինչև օրս էլ Աբասթումանի աստղադիտարանի հիմնական դիտողական սարքն է և մեծ դեր է խաղում նրա գիտահետազոտական աշխատանքներում:

Սովետական աստղադիտակաշինության մեջ որակապես մի նոր աստիճան նշանավորեց դասական օպտիկական սիստեմի և յուրօրինակ կոնստրուկցիայի՝ Եվրոպայում խոշորագույն (գլխավոր պարաբոլիկ հայելու տրամագիծը 2,6 մ) և այն ժամանակ աշխարհում երրորդ աստղադիտակի ստեղծումը: Աստղադիտակը կառուցվեց Լենինգրադի պետական օպտիկամեխանիկական գործարանում, ուր Բագրատ Իոաննիսյանը 1957 թվականին, որպես աստղագիտական հատուկ կոնստրուկտորական բյուրոյի պետ, հրավիրվել էր մշակելու նրա նախագիծը:

Ղրիմի աստղադիտարանում 1960 թվականից գործող աստղադիտակի շնորհիվ հայրենական աստղաֆիզիկան իր զինվածությամբ աշխարհում գրավեց երկրորդ տեղը: 2,6 մ աստղադիտակի օգնությամբ մեծ քանակությամբ արժեքավոր տվյալներ ստացվեցին թույլ աստղերի և աստղային համակարգերի՝ գալակտիկաների վերաբերյալ: Տիեզերական թռիչքների արշալույսին նրա միջոցով կատարվել են սովետական տիեզերական հրթիռների բազմաթիվ դիտումներ՝ նրանց ուղեծրերի ճշտման նպատակով:

Ղրիմի աստղադիտարանի 2,6 մ աստղադիտակի շահագործման հանձնելուց հետո Բագրատ Իոաննիսյանի ղեկավարած կոնստրուկտորական բյուրոյում սկըսվեցին նույն չափերի ավելի կատարելագործված աստղադիտակի ստեղծման աշխատանքները Հայկական ՍՍՀ ԳԱ Բյուրականի աստղադիտարանի համար: Բագրատ Իոաննիսյանը, չնայած իր ծայրահեղ զբաղվածությանը, մեծ ուշադրություն էր նվիրում 2,6 մ աստղադիտակի նախագծմանը և կառուցմանը, իսկ այնուհետև՝ Բյուրականի աստղադիտարանում նրա տեղակայմանը:

Բյուրականի աստղադիտարանի համար կառուցվող 2,6 մ աստղադիտակի նախագծմանն ու կառուցմանը զուգընթաց, Բագրատ Իոաննիսյանի ղեկավարած կոնստրուկտորական բյուրոն զբաղված էր մի շատ կարևոր գործով, որը բառիս բուն իմաստով դարձավ նրա ստեղծագործության գլուխգործոցը: Աստղաֆիզիկայի հետագա զարգացման շահերը 1960-ական թվականների սկզբին նոր, ավելի խոշոր աստղադիտակների ստեղծման հրամայական պահանջ էին առաջադրում սովետական աստղադիտակաշինությանը: Կառավարության որոշմամբ Բագրատ Իոաննիսյանի ղեկավարած կոնստրուկտորական խմբին հանձնարարվում է աշխարհում խոշորագույն՝ 6 մ տրամագծով աստղադիտակի ստեղծման գործը, որը որքան պատվավոր, այնքան էլ դժվար ու պատասխանատու էր:

Հիշյալ տարիներին աշխարհում ամենամեծ՝ Պալոմարի (Կալիֆորնիա, ԱՄՆ) աստղադիտարանի աստղադիտակի տրամագիծը 5 մ էր, և մասնագետների շրջանում իշխում էր այն կարծիքը, որ հնարավոր չէ ստեղծել դրանից ավելի մեծ չափերի և արդյունավետ գործող աստղադիտակներ: Բագրատ Իոաննիսյանին, իր օգնականների հետ միասին, հաջողվեց հերքել այդ կարծիքը և ստեղծել ոչ միայն աշխարհում ամենախոշոր 6 մ տրամագծով մի աստղադիտակ, այլև հայտնագործել է՛լ ավելի մեծ աստղադիտակներ կառուցելու սկզբունքորեն նոր հնարավորություն:

Արդեն շուրջ 15 տարի 6 մ աստղադիտակը հաջողությամբ գործում է ՍՍՀՄ ԳԱ հատուկ աստղադիտարանում, որը գտնվում է Հյուսիսային Կովկասում, ծովի մակերևույթից շուրջ 2.100 մ բարձրության վրա:

Աստղադիտակաշինության մեջ առաջին անգամ 6 մ աստղադիտակի կոնստրուկցիայում Իոաննիսյանը կիրառեց, այսպես կոչված, ալտ-ազիմուտային տեղակայքը, որի դեպքում դիտախողովակը կարող է պտտվել ուղղաձիգ և նրան ուղղահայաց (հորիզոնական) առանցքների շուրջը:

Ալտ-ազիմուտային տեղակայքի դեպքում աստղադիտակի երկնակամարի պըտույտի հետ խիստ համաձայնեցված շարժումները, որոնք կատարվում են միայն ուղղաձիգ և հորիզոնական առանցքների շուրջը, հնարավոր է իրականացնել բացառապես կառավարման էլեկտրոնային հատուկ համակարգի միջոցով: Ուստի նոր, ալտ-ազիմուտային տեղակայքը զերծ է աստղադիտակի չափերի սահմանափակության պահանջից, իսկ դա մեծ առավելություն է հասարակածային տեղակայքի համեմատ:

Աշխարհում ամենախոշոր և յուրօրինակ 6 մ աստղադիտակի ստեղծումը հայրենական աստղադիտակաշինության մեծագույն հաղթանակն էր, և սովետական կառավարությունն ըստ արժանվույն գնահատեց այն: Աստղադիտակի նախագծման ու կառուցման մի խումբ մասնակիցներ 1978 թվականին արժանացան լենինյան մրցանակի, իսկ աշխատանքի ղեկավար Բագրատ Իոաննիսյանին մինչ այդ (1977 թ.) շնորհվել էր սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:

Դժվար է գերագնահատել Բագրատ Իոաննիսյանի՝ աստղագիտական գործիքաշինության այդ անխոնջ մշակի, դերը հայրենական գիտությունը հզոր աստղադիտակներով և առաջնակարգ աստղագիտական գործիքներով զինելու գործում: Նրա ղեկավարությամբ և անմիջական մասնակցությամբ ստեղծված աստղադիտակները և աստղագիտական սարքերը բարձր արդյունավետությամբ գործում են մեր երկրի բոլոր խոշոր աստղադիտարաններում:

Նախագծային-կոնստրուկտորական լարված աշխատանքի հետ միասին Բագրատ Իոաննիսյանը երկար տարիներ շարունակ Դմիտրի Մաքսուտովի հետ համատեղ ղեկավարել է Պուլկովոյի աստղադիտարանի աստղային գործիքաշինության բաժինը: Նրանց ղեկավարությամբ այդ բաժնում ստեղծվել են մի շարք կարևոր աստղագիտական գործիքներ, որոնք հաջողությամբ կիրառվել են սովետական աստղագիտության մեջ:

Նրա գրչին են պատկանում աստղագիտական գործիքաշինության ամենատարբեր հարցերին վերաբերող բազմաթիվ արժեքավոր գիտական աշխատություններ: Իոաննիսյանի շատ հայտնագործություններին ու մշակումներին, որոնք հիմնվում են տեխնիկական նոր գաղափարների վրա,, տրվել են հեղինակային իրավունքի վկայականներ:

Բագրատ Իոաննիսյանի բեղմնավոր գործունեության մասին ահա թե ինչ է ասել ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը. «Վերջին երկու տասնամյակում աստղագիտական գործիքաշինությունը մեր երկրում զարգանում է բնավ չտեսնված տեմպերով: Այդ գործում մեծ դեր է խաղացել լենինյան մրցանակի դափնեկիր Բ. Կ. Իոաննիսյանը: Նրա անմիջական ղեկավարությամբ մշակվել են մի շարք եզակի աստղագիտական գործիքներ, որոնցից մի քանիսը մինչև հիմա աշխարհում իրենց հավասարը չունեն»: Իսկ ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ Դ. Մաքսուտովը գրել է. «Աստղագիտական օպտիկայով ես զբաղվում եմ մանկությունից և ներկայումս, ծերությանը մոտենալիս, կարող եմ ասել, որ ինձ չի վիճակվել հանդիպելու աստղագիտական գործիքների ավելի տաղանդավոր կոնստրուկտորի, քան Իոաննիսյանն է: Լենինյան մրցանակի պատվո նշանը արժանի կերպով զարդարում է նրա կուրծքը»:

Այս կարծիքներին կարելի է ավելացնել այն եզակի փաստը, որ Բագրատ Իոաննիսյանին ՍՍՀՄ ԳԱ նախագահության հատուկ որոշմամբ, առանց դիսերտացիայի պաշտպանության, շնորհվել է տեխնիկական գիտությունների դոկտորի աստիճան: Այդ փաստը եզակի է այն իմաստով, որ հանգամանքների բերումով Իոաննիսյանը չուներ ոչ միայն ավելի ցածր գիտական աստիճան, այլև նույնիսկ բարձրագույն կրթություն:

Բագրատ Իոաննիսյանը մեծ ուշադրություն էր նվիրում աստղագիտական գործիքների երիտասարդ կոնստրուկտորների պատրաստման և կատարելագործման հարցերին:

Բագրատ Իոաննիսյանի վաստակը արժանի ճանաչում է ստացել նաև արտասահմանում: Նա ընտրվել է Միջազգային աստղագիտական միության և նրա Աստղագիտական գործիքների մասնագիտական հանձնաժողովի անդամ: Նրա բովանդակալից զեկուցումները սովետական աստղադիտակաշինության նվաճումների, մասնավորապես 6 մ աստղադիտակի մասին, եղել են միջազգային մի շարք գիտաժողովների մասնակիցների ուշադրության կենտրոնում:

Այսօր, երբ Սովետական Միությունում բուռն զարգացում են ապրում արտադրողական ուժերը, գիտությունն ու տեխնիկան, մենք երախտագիտության խոսք ենք ուղղում բոլոր նրանց, ովքեր իրենց ստեղծագործական եռանդը նվիրաբերել են մեր մեծ հայրենիքի առաջադիմությանը, նրա ծաղկմանն ու հզորացմանը:

**Լ. ՄԻՐԶՈՅԱՆ**

**Աստղագնացության միջազգային ակադեմիայի թղթակից-անդամ**

# ԿՈՉՈՒՄԸ՝ ՓՈՐՁԱՐԿՈՂ—ՕԴԱՉՈՒ

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ԱՎԻԱՑԻԱՆ անցել է զարգացման բեղմնավոր ուղի: Ինչպես երկրի համար օրհասական տարիներին, այնպես էլ խաղաղ շինարարության ժամանակաշրջանում նա միշտ սատար է եղել հայրենիքին:

Սովետական ավիացիայի պատմությունը հարուստ է տաղանդավոր ավիակոնստրուկտորների, օդաչուների, ինժեներների, փորձարկող-օդաչուների անուններով: Դրանց թվում քիչ չեն և մեր հայրենակիցները, որոնցից մեկն էլ ավիացիայի պահեստի գեներալ-մայոր, վաստակավոր փորձարկող-օդաչու, լենինյան և ՍՍՀՄ պետական մրցանակների դափնեկիր Անդրեյ Արսենի Մանուչարովն է:

Վաթսունիննամյա գեներալի գերդաստանը ևս անցել է հայոց ցեղասպանության արհավիրքներով, ենթարկվել ծանր փորձությունների: Նրա հայրը՝ Արսեն Վասիլևիչը, կոտորածից մազապուրծ, Արևմտյան Հայաստանից անցել է Ռուսաստան և երկար դեգերումներից հետո հաստատվել Խարկովում: Նրա մտքովն իսկ չէր անցնում, որ կգա մի լուսավոր օր, և ոչ միայն ինքը, այլև իր որդին հնարավորություն կունենան ստանալու բարձրագույն կրթություն: Այդ պայծառ օրը եկավ սովետական իշխանության հաստատումով: Արսեն Մանուչարովը սովորեց և շինարար-ինժեների մասնագիտություն ձեռք բերեց: Իսկ որդու նախասիրությունն այլ էր:

...Անդրեյը ուշիմ և համարձակ տղա էր, հետաքրքրվում էր մաթեմատիկայով, ֆիզիկայով և ավիացիայով: Երազում էր ռազմական օդաչու դառնալ: Դպրոցում կոմերիտական աշխատանք էր կատարում, կազմակերպում մարզական մրցումներ ու ինքն էլ ակտիվորեն մասնակցում դրանց, ամեն ինչ անում՝ իր մեջ օդաչուին բնորոշ հատկանիշներ դաստիարակելու համար: Նա ուշիուշով հետևում էր սովետական օդաչուների ռեկորդային թռիչքներին, հմայված էր Վալերի Չկալովի սխրանքով:

Միջնակարգ կրթություն ստանալուց հետո Անդրեյ Մանուչարովն ընդունվում է Մոսկվայի Ս. Օրջոնիկիձեի անվան ավիացիոն ինստիտուտը: Ուսումնառության տարիներին աչքի է ընկնում աշխատասիրությամբ, բարձր առաջադիմությամբ, արժանանում դասախոսների գովասանքին: 1940 թվականին հաջողությամբ ավարտում է ինստիտուտը՝ ստանալով ինքնաթիռաշինարար-ինժեների որակավորում: Բացի այդ, Անդրեյն իրականացնում է իր նվիրական երազանքը. ավարտում է ինստիտուտին կից աերոակումբը, այնուհետև՝ Վ. Չկալովի անվան կենտրոնական աերոակումբին առընթեր հրահանգիչ-օդաչուների դասընթացը:

Աշխատելով ինժեներ-կոնստրուկտոր՝ նա միաժամանակ հրահանգիչ-օդաչու էր, ուսանողներին սովորեցնում էր թռիչքային գործը: Վերջիններս սիրում և հարգում էին իրենց հմուտ հրահանգչին, խստապահանջ ու բարյացակամ մարդուն: Նրա շատ սաներ դարձան շնորհալի ինժեներ-օդաչուներ և համալրեցին կոնստրուկտորական բյուրոներն ու զորամասերը:

Շուտով պայթեց մեծ Հայրենականը: Մանուչարովն առանց հապաղելու կամավոր մտնում է հատուկ նշանակման 401-րդ կործանիչ ավիացիոն գունդ, որը կազմավորվել էր փորձարկող-օդաչուներից: Գնդի հրամանատարը Սովետական Միության հերոս, գնդապետ Ստեփան Սուպրունն էր: Այստեղ Մանուչարովը կատարում է գնդի հրամանատարի ինքնաթիռի զենքի գծով մեխանիկի պարտականությունները, օգնում մյուս օդաչուներին, քանի որ ինքը չէր թռչում ՄԻԳ—3-ով, որոնցով զինված էր գունդը: Սուպրունը խոստացել էր մարտական աշխատանքի ընթացքում Անդրեյին սովորեցնել ՄԻԳ-ով թռչել: Բայց 1941 թվականի հուլիսի 4-ին տեղի ունեցած անհավասար մարտում գնդի հրամանատարն սպանվեց: Նրա տեղակալ Կ. Կոկկինակին Մանուչարովին ուղարկում է պահեստային ավիա-



գունդ, որտեղ նա, արագ տիրապետելով ՄԻԳ-ով թռչելու տեխնիկային, խնդրում է կրկին ուղարկել ռազմաճակատում գտնըվող իր գունդը: Սակայն գնդի հրամանատարը նրան ասում է. «Պահեստային գունդը նույնպես ռազմաճակատ է, դուք պետք է բանակի համար օդաչուներ պատրաստեք»: Կոմունիստ Անդրեյ Մանուչարովին նշանակում են հրահանգիչ-օդաչու: Այս պատասխանատու աշխատանքում նա դրսևորում է իր կարողությունները, հարուստ գիտելիքները, ամեն ինչ անում ռազմաճակատի համար ավելի շատ որակյալ օդաչուներ պատրաստելու նպատակով: Հրամանատարության ուշադրությունից չեն վրիպում Մանուչարովի անձնվեր աշխատանքը, կազմակերպչական ակնհայտ ունակությունները: Շուտով նա նշանակվում է օղակի, էսկադրիլիայի հրամանատար, այնուհետև գնդի հրամանատարի օգնական՝ օդային-հրաձգային ծառայության գծով:

Անդրեյ Արսենովիչի սաները մեկնում էին ռազմաճակատ մարտական օդաչուին պատշաճ պատրաստվածությամբ: Նրանցից շատերը դարձան հիանալի հրամանատարներ, մարտնչեցին արիաբար, ոմանց շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում: Մանուչարովը հաճախ էր ռազմաճակատից ստանում երախտագիտությամբ լի նամակներ, որոնցում նրանք պատմում էին իրենց մարտական հաջողությունների մասին, իրենց խոհերը կիսում նրա հետ:

Ռազմաճակատի համար մարտական բարձր պատրաստվածությամբ օդաչուական անձնակազմ պատրաստելու համար Անդրեյ Մանուչարովը պարգևատրվեց Կարմիր աստղի շքանշանով: Դա նրա առաջին շքանշանն էր:

Եկավ 1944 թվականը: Գերագույն գլխավոր հրամանատարի հրամանով բոլոր ինժեներ-օդաչուներին, կոնստրուկտորներին ռազմաճակատից ետ կանչեցին և ուղարկեցին Կենտրոնական աերոհիդրոդինամիկական ինստիտուտ (ЦАГИ): Այստեղ Մանուչարովը անցավ փորձարկող-օդաչուների դասընթացը և աշխատանքի նշանակվեց Ա. Ի. Միկոյանի գլխավորած հատուկ կոնստրուկտորական բյուրոյում: Աստիճանաբար կատարելագործելով իր մասնագիտությունը՝ Մանուչարովը դառնում է լավագույն փորձարկող-օդաչուներից մեկը և մեծ ավանդ ներդնում մխոցավոր ռեակտիվ առաջին փորձնական ինքնաթիռների փորձարկման գործում: Նա մասնակցել է նաև Ա. Ս. Յակովլևի, Ա. Ն. Տուպոլևի, Պ. Օ. Սուխոյի, Ս. Վ. Իլյուշինի, Ա. Ս. Լավոչկինի և ուրիշների կոնստրուկտորական բյուրոներում ծնունդ առած ինքնաթիռների փորձարկմանը:

Հիրավի, հերոսական պրոֆեսիայի տեր մարդիկ են փորձարկող-օդաչուները, դրա համար էլ արժանացել են ժողովրդի խոր ակնածանքին: Լինելով ավիակոնստրուկտորների առաջին օգնականները՝ նրանք, ինչպես ասում են, «ինքնաթիռներին թռչել են սովորեցնում» իրենց բարձր թռիչքային վարպետության, ինժեներական հարուստ գիտելիքների շնորհիվ: Երբ փորձարկող-օդաչուն առաջին թռիչքի է հանում նոր տիպի ինքնաթիռը, ապա նրան հուզում է ոչ թե իր կյանքը վտանգի ենթարկելու միտքը, այլ պատասխանատվության զգացումը այն բազմաթիվ մարդկանց առջև, որոնք ստեղծել և այդ մեքենան վստահել են իրեն: Եվ ընդհանրապես փորձարկող-օդաչուի ամբողջ աշխատանքը կապված է մեծ ռիսկի հետ: Բայց դա վսեմ առաքելության գիտակցումից ու պարտքի թելադրանքից բխող ռիսկ է: Չէ որ փորձարկող օդաչուն որքան ավելի մանրամասն ստուգի ինքնաթիռը թռիչքային տարբեր պայմաններում, այնքան ավելի անակնկալ վտանգից զերծ և դյուրին կլինի նրա հետագա շահագործումը: Այնուամենայնիվ, գործ ունենալով նոր ինքնաթիռի հետ, հնարավոր չէ ամեն ինչ մինչև վերջ կանխատեսել, այլապես փորձարկումների անհրաժեշտությունն էլ չէր զգացվի:

— Ինքնաթիռը ճիշտ գնահատելու համար,— ասում է Անդրեյ Արսենովիչը,— փորձարկող-օդաչուն ամենից առաջ պետք է լինի քաջ և բարձր գրագիտության տեր մարդ, ունենա ոչ միայն օդաչուական, այլև ինժեներական կրթություն, փորձարկման ժամանակ ցուցաբերի առավելագույն ճշտություն: Նա իրավունք չունի ենթադրությունները ներկայացնել որպես փաստ, քանի որ ինքնաթիռը կատարելագործելու ուղղությամբ կոնստրուկտորի հետագա աշխատանքը գերազանցապես կախված է թռիչքի արդյունքների վերաբերյալ իր տված ինֆորմացիայից:

Ետպատերազմյան տարիներին ավիացիոն գիտությունը մեր երկրում նոր բարձունքներ նվաճեց: Կուսակցությունը սովետական գիտնականների և կոնստրուկտորների առջև բարդ ու պատասխանա-

տու խնդիր առաջադրեց. մշակել և սերիական արտադրության մեջ դնել ժամանակակից ռեակտիվ տեխնիկան: Կոնստրուկտորները ձեռնամուխ եղան կուսակցության առաջադրանքի իրականացմանը: Նրանց ակտիվորեն օգնում էին ինժեներները, փորձարկող-օդաչուները, որոնց թվում էր Անդրեյ Մանուչարովը:

Շուտով Արտեմ Միկոյանը Սովետական Միությունում առաջինը ստեղծեց ռեակտիվ ՄԻԳ—9 ինքնաթիռը: Մանուչարովը կազմակերպեց այս նոր ինքնաթիռի փորձարկումը: 1947 թվականին նրա գլխավորությամբ մի քանի ՄԻԳ—9 ինքնաթիռներ ցուցադրական թռիչքով անցան Կարմիր հրապարակի վրայով՝ արժանանալով կուսակցության ու կառավարության ղեկավարների, բազմաթիվ հանդիսականների ծափողջույններին: Այս փորձարկման համար Ա. Մանուչարովը երկրորդ անգամ պարգևատրվեց Կարմիր աստղի շքանշանով:

Կուսակցության ու կառավարության մշտական հոգատարության շնորհիվ ՍՍՀՄ ռազմաօդային ուժերն ու քաղաքացիական ավիացիան որակական նոր աստիճանի բարձրացան: Ռազմաօդային ուժերը համալրվեցին հրթիռակիր ինքնաթիռներով, ուղղաձիգ թռիչքի ու վայրէջքի, ինչպես նաև բազմանպատակ գործողության այլ մեքենաներով: Նոր տեխնիկայի ներդրմամբ ավիացիան ձեռք բերեց ամենաբարդ օդերևութաբանական պայմաններում գործելու, մեծ հեռավորությունների վրա թռչելու և երկրի պաշտպանության ասպարեզում շատ այլ բարդ խնդիրներ լուծելու կարողություն: Այս աշխատանքում Մանուչարովն ու իր գործընկերներն անմասն չմնացին:

Քառասուներկու տարի շարունակ Անդրեյ Արսենովիչը մեծ հմտությամբ ղեկավարել է փորձարկման աշխատանքներ, անձամբ թռել ամենատարբեր նշանակության 106 տիպի ինքնաթիռով և շատերին հինգերորդ օվկիանոսի ուղեգիր տվել: Դրանց մեջ եղել են կործանիչներ, ծանր ռմբակոծիչներ, տրանսպորտային ինքնաթիռներ, ուղղաթիռներ և այլն:

Այսօր էլ Անդրեյ Մանուչարովը մեծ աշխատանք է կատարում՝ պատրաստելով փորձարկող-օդաչուներ, որոնցից են ՍՍՀՄ վաստակավոր փորձարկող-օդաչուներ, գնդապետներ Գ. Բոտենկոն, Լ. Ալեքսանդրովը, Ն. Ղազարյանը, Վ. Նազարյանը, Ա. Լյուքինը և ուրիշներ: Նա աչքի է ընկնում նաև հասարակական-քաղաքական ակտիվ աշխատանքով. կուսկոմիտեի անդամ է, ժողովրդական դեպուտատների՝ Ժուկովսկի քաղսովետի դեպուտատ: Ա. Մանուչարովը զինվորական մամուլում հաճախ հանդես է գալիս ժամանակակից գերձայնային ինքնաթիռների աերոդինամիկայի հարցերի վերաբերյալ հոդվածներով:

Անվանի փորձարկող-օդաչուն իր կառավարական պարգևների ցուցակում ունի նաև Լենինի, Կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի առաջին և երկրորդ աստիճանների շքանշաններ, բազմաթիվ մեդալներ: Նոր ինքնաթիռների ստեղծման և փորձարկման գործում մեծ ավանդի համար Անդրեյ Մանուչարովին 1969 թվականին շնորհվեց լենինյան մրցանակ, իսկ 1975-ին՝ ՍՍՀՄ պետական մրցանակ:

Ավիացիայի գեներալ-մայորը օրինական հպարտությամբ է նշում այն մարդկանց անունները, որոնց հետ երկար տարիներ կողք-կողքի աշխատել է: Դրանցից են նշանավոր ավիակոնստրուկտորներ Ա. Տուպոլևը, Ա. Միկոյանը, Ս. Իլյուշինը, Պ. Սուխոյը, Ա. Յակովլևը, ավիացիոն գիտության ու տեխնիկայի խոշոր գիտնականներ, ակադեմիկոսներ Ս. Չապլիգինը, Մ. Կելդիշը, գիտնականներ Գ. Մուսինյանը, Տ. Մելքումովը, Ռ. Խաչատուրովը, փորձարկող-օդաչուներ, Սովետական Միության հերոսներ Մ. Գրոմովը, Ս. Սուպրունը, Պ. Ստեֆանովսկին, Է. Յոլյանը, Ռ. Կապրելյանը և շատ ուրիշներ: Նրա մերձավոր բարեկամներից է Յու. Գագարինի անվան տիեզերագնացների պատրաստման կենտրոնի պետ, Սովետական Միության կրկնակի հերոս Գ. Բերեգովոյը:

Շուտով կբոլորի Անդրեյ Մանուչարովի յոթանասունամյակը: Մազերը ճերմակել են, դեմքին նեղ ակոսներ տարածվել, սակայն հոգով առույգ ու ամրակազմ գեներալը շարունակում է իրեն հատուկ եռանդով աշխատել:

**Խ. ՊԵՏՐՈՍՅԱՆՑ**
**Գվարդիայի պաշտոնաթող գնդապետ, ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ**



# *ԺԱՄԱՆԱԿԻՆ ՀԱՄԸՆԹԱՑ*

**Ս. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

Սովետական ժողովուրդը ապրում է սոցիալ-տնտեսական, հոգևոր ու մշակութային կարևոր շրջափուլ: Մեր կուսակցության XXVII համագումարը կյանքի բոլոր ոլորտներում բեկումնային խնդիրներ սահմանեց և գործնական ծրագրերով խորհրդանշեց հասարակական զարգացման անսովոր հեռանկարներ:

Ժամանակը դուրս է եկել նոր ուղեծիր, մարդիկ չափման այլ միավորներ են փնտրում՝ մարմնավորելու կուսակցության պատմական որոշումները:

Այս մեծ ուղերթին անսահմանորեն կարևորվում է նաև գեղարվեստական գրականության առաքելությունը: Ժամանակի գործոնը կրկին հրամայականորեն ծառանում է գրողների առջև՝ այս անգամ յուրովի իմաստավորումով:

Չափազանց բարդ է մեր ժամանակը, և այդ բարդությունն արտահայտվում է նյութի և ոգու հակասության ահռելի սրումով, աշխարհավեր կոպիտ ուժի և մարդկային արժեքների նրքին անհաշտությամբ ու պայքարով: Ժամանակի հանդեպ մարդու պատասխանատվության պրոբլեմը, նրա բարոյական-քաղաքացիական պարտքի խնդիրն այժմ գրականությանն առաջադրվող առավել կենսական պարտադրանք են: Ի վերջո՝ դա պարտք ու պատասխանատվություն է աշխարհի հանդեպ, մարդկության հանդեպ, մեր փոքրիկ ու անկրկնելի հողագնդի ճակատագրի հանդեպ: Քիչ է ասել, թե գրականությունը պետք է դառնա ժամանակի հայելին: Նա պետք է իր ներազդեցության ուժով վերափոխիչ դեր ունենա նաև: Եթե ժամանակն ու հանգամանքներն են շարունակաբար իրենց ետևից քաշում գրականությանը, դառնում նրա թելադրիչը, ուրեմն հայեցողական գրականություն է դա: Ե. Եվտուշենկոն հիշեցնում է գրողներին, որ նրանց մասնագիտությունը աստվածաշնորհ բան է ու դա երբեք չպետք է մոռանան անել: «Գրականությունը հենց հիշեցումն է ժողովրդին, որ նա ժողովուրդ է, մարդկությանը՝ որ նա մարդկություն է: Հիրավի, գրողները հասել են այն բանին, որին չի հասել բժշկությունը. նրանք հաղթել են անհայտացման ճակատագրայնությանը: Նրանց հերոսները, որոնք ապրում են երկա՜ր-երկա՜ր ժամանակ, հավերժորեն ժողովրդի հետ են, և մահը ոչինչ չի կարող անել նրանց հետ: Ռուսաստանում ինքը՝ ժողովուրդը, շատ բանով ստեղծվել է գրողների կողմից, Պուշկինի կողմից: Եվ եթե մեր մեջ ինչ-որ բան վատ է, ամենևին էլ Պուշկինը չի մեղավոր»:

Սա գրականության դերի մաքսիմալիստական այն բանաձևումն է, որի հետ չի կարելի չհամաձայնել: Լինել ժամանակի պատգամախոսը՝ ամենևին էլ չի նշանակում մշտապես փոփոխել թեմաներն ու արտահայտչաձևերը կամ հետևողականորեն թվարկել այսօրվա գիտատեխնիկական առաջընթացի նորույթները: Երկրի, ժողովրդի, մարդկության կյանքում գրողի առաքելական դերը, ամենից առաջ, ժամանակի ոգու հայտնության մեջ է, կոնկրետ ժամանակային տարածքում մարդ-անհատի սոցիալական ու բարոյական նկարագրի գեղարվեստական բացահայտման մեջ: Ինչպիսի՞ հերոս ընտրել, չէ՞ որ կյանքը զարմանալիորեն բարդացել է, դարձել ավելի հագեցած ու բուռն, բազմազան դեպքերով ու իրադարձություններով հարուստ: Մար-

դը կարո՞ղ է մարսել այդ ամենը, յուրացնել, եփել իր մեջ: Հոգեբանական ի՞նչ մետամորֆոզների է ենթարկում այդ ամենը մարդուն:

Այս պրոբլեմներին իրենց տաղանդի յուրահատկություններով պատասխան են տալիս Սերո Խանզադյանը, Հրանտ Մաթևոսյանը, Վարդգես Պետրոսյանը, Ստեփան Ալաջաջյանը, Համո Սահյանը, Վահագն Դավթյանը, Սիլվա Կապուտիկյանը, Գևորգ Էմինը, Անահիտ Սահինյանը, Զորայր Խալափյանը և ուրիշներ:

Համո Սահյանը հայ դասական պոեզիայի լավագույն ավանդույթների շարունակողն է: Բայց և նրա բանաստեղծական մտածողության համակարգը զարմանալիորեն նոր է ու թարմ: Դասականի ու արդիականի ներդաշնակումը Սահյանի մոտ արդյունք է պոեզիայի նկատմամբ նրա երկյուղած սիրո, գեղագիտական կայուն համոզմունքների: «Պոեզիան իմ ամբողջ կյանքն է»,— գրել է նա: Եվ շարունակ հետևել է օրերի ռիթմին, ապա յուրովի ներսուզումներով հասել մարդու և բնության ներդաշնակմանը, ժամանակի կենսական երևույթների և իրականություն—անհատ բարդ հանգույցի բանաստեղծական քննությանը:

Հ. Սահյանի գեղագիտական դավանանքի մեջ ժամանակի հրամայականը վճռորոշ գործոն է և գեղարվեստական-փիլիսոփայական տարբեր խորհուրդներ ու պատկերային կառույցներ է ենթադրում: Ամենից առաջ՝ ինքնին հետաքրքիր է պոեզիայի նրա ընկալումն ու մեկնաբանությունը.

*Բանաստեղծությունն— այդ սրբագործված,*
*Ինձանից պոկված իմ էությունն է,*
*Աշխարհի առաջ, աշխարհով փորձված*
*Իմ խստությունն ու իմ մեղությունն է:*
*Այդ— արյան եռքն է իմ երակների,*
*Խոհերիս խորհուրդն ու խտացումն է,*
*Այդ— կրկնությունն է իմ անկրկնելի*
*Եվ իմ գոյության փոխհատուցումն է:*
*Բանաստեղծությունն— այդ մարդկանց հանդեպ*
*Ու ծաղկանց հանդեպ իմ ջերմությունն է,*
*Հողմի, ամպրոպի, կայծակների հետ*
*Իմ քառատրոփ մտերմությունն է:*
*Այդ— իմ մեջ փրկված աղնիվն ու բարին,*
*Իմ լացով կնքված անմեղությունն է...*
*Բանաստեղծություն գրելու պահին*
*Ամբողջ աշխարհը իմ տեղ ու տունն է:*

Հ. Սահյանը ժամանակի հրամայականի հետ անխզելիորեն կապում է պոեզիայի պատմական առաքելության, մշտապես բանաստեղծության հարստացման ու խորացման խնդիրը: Յուրաքանչյուր երգով նա մտնում է ժամանակի հետ տաք գրույցի մեջ, հաճախ վեճի մեջ՝ գտնելու դարձյալ ժամանակի ոգին, ժամանակի լարը, ժամանակի հոգսը: Նրա պոետական նոր շարքերը իրապես կրում են ժամանակի բեռը, քանի որ բանաստեղծը կենդանի շարժման մեջ, կենդանի կյանքի սահմաններում է տեսնում պոեզիայի կենսական երակները, երգի նորացման աղբյուրը:

Կյանքի դինամիկայի, իրականության կենդանի գրգիռների սուր զգացողությունը բնութագրական է Սիլվա Կապուտիկյանին, Վահագն Դավթյանին, Հրաչյա Հովհաննիսյանին, Մարո Մարգարյանին: Այդ զգացողությունն էլ նրանց դարձնում է ժամանակի հասարակական տրամադրությունների, ժամանակի խոհերի ու հույզերի թարգմանը: Վերջին հաշվով՝ նման քնարերգուները նաև ժամանակի հոգեբանության անսխալ արտահայտիչներն են: Պատահական չէ, որ այսօր սովետահայ անվանի բանաստեղծների երգերը մեծ կշիռ ունեն հասարակական հոգեբանության կոահումների, գրական շարժման ընթացքի, գեղարվեստական չափանիշների սահմանման դիտակետերից: Մի տեսակ, ասես, բնական և օրինաչափ են Հ. Սահյանի ու նրա սերնդակից բանաստեղծների խոսքի հզոր ուժը, նրանց պոեզիայի ազդեցության լիցքերը: Իսկ դա նաև մեր հասարակական զարգացման, դարի պարտադրանքի, այդ սերնդի ոչ հեշտ ճանապարհի ու տևական փորձի արգասիք է:

*Մեր կյանքը եղավ դժվարին վերելք,*
*Պատնեշներ անցանք մենք անհնարին,*
*Մեզ բաժին ընկավ դժվարին մի երթ,*
*Դժվարին մի բախտ ու երգ դժվարին:*

Ինչ կտրվածքներով էլ նայելու լինենք սովետահայ գրականությանը՝ նրա քաղաքացիական նկարագիրը գծագրվում է բավականին խորունկ, տարողունակ ու բազմերես տեսքով: Արդիական թեմատիկայի կամ ժամանակի գեղագիտության տարածքում քաղաքացիականությունը արտահայտվում է, նախ, գրողի և ժողովրդի կապի ու հարաբերության շրջանակներում: Այստեղ հստակորեն պարզվում է արվեստագետի կենսահայացքը, նրա աշխարհավերաբերմունքը, գեղարվեստական կոնցեպցիան: Անցյալի թեմատիկայի ոլորտում քաղաքացիականությունը դրսևորվում է պատմության և մեր ժամանակի աղերսները ճիշտ դիտարկելու, պատմական հիշողության դասերը ներկայում հնչեցնելու, ազգային-հայրենասիրական պրոբլեմատիկան ինտերնացիոնալիստական աշխարհայեցությամբ մեկնելու սկզբունքներով: Քաղաքացիականի գեղագիտությունը սոցիալիստական ռեալիզմի գաղափարական նպատակաուղղվածության ձևերից մեկն է և յուրացվում է գեղարվեստական տարբեր ոճերի, պոետիկական բազմազան հնարանքների և նախասիրությունների միջոցով: Քաղաքացիականը հիմնավոր դավանանքի գլխավոր պայմանն է ու երբեք չի կարող կաղապարվել օրացույցի կամ լոզունգների շրջանակներում: Արվեստի նպատակը դարն է, ոչ թե ժամը. ուրեմն՝ գեղարվեստական ձևերի և ուղղությունների, խորքի, գրական վարպետության խնդիրները մնում են միշտ առաջնային:

*Ուշ նոյեմբերի խաղողի նման,*
*Հատ-հատ, համրովի խաղողի նման,*
*Դուք՝ ճիլ մի ողկույզ թփերում գաղտուկ,*
*Ջամշած, քաղցրացած՝ դուք ոսկի ու խունկ,*
*Խունկի պես սակավ, ոսկու պես զտված,*
*Դուք՝ բերք ու տուրքից արդեն ազատված,*
*Դուք՝ վաղ զարնանից արև ամբարած,*
*Տաք ու պաղ տեսած ու ցուրտը կերած,*
*Պատրաստ՝ տոկալու, պատրաստ՝ քաղվելու,*
*Պատրաստ՝ վազի հետ հողում թաղվելու,*
*Դուք՝ իմ նոր երգեր,*
*Խիտ ու խոր երգեր:*

Այսպես է իր երգի դերն ու իմաստը նժարում Ս. Կապուտիկյանը: Նա ունի իսպանացի նշանավոր բանաստեղծ Գարսիա Լորկային ձոնած մի քերթված՝ **Բանաստեղծները** խորագրով: Ֆաշիստների ձեռքով նենգորեն սպանված մեծ պոետի ճակատագիրը Կապուտիկյանի համար միջոց է եղել՝ վեր հանելու արվեստագետների, խոսքի վարպետների համամարդկային արժեքը, նրանց վեհ կոչումը: Ու, ասես, բանաստեղծուհին ձայնակցում է իր ռուս գրչեղբորը՝ Ե. Եվտուշենկոյին՝ յուրահատուկ դեր հատկացնելով գրողներին: Չէ՞ որ վերջիններիս ձայներից ու դայլայլներից է «ծեր հողագունդը անվերջ մանկանում», օդը մաքրվում, «կարգավորվում աշխարհի հեղձուկ շնչառությունը».

*Նրանք աշխարհ են գալիս հավվադեպ,*
*Հաճախ դար տևող ընդմիջումներով,*
*Անցյալ ու գալիք այդ տարիներում ապրող-մեռնողի*
*Ջիրքի և ոգու կուտակումներն են բերում իրենց մեջ,*
*Այդ տարիներում ասված-չասվածի համահավաքը.*
*Նրանց է տրված բյուրերի բերնով ժայթքելու պարտքը,—*
*Թողեք որ խոսեն բանաստեղծները:*

Գեղարվեստական գրականության մեջ մարդու անհատականության պրոբլեմը այսօր իրենով պայմանավորում է շատ կենսական հանգույցներ: Գուցե ոմանք շատ հասկանալի տարակուսանքով ընդունեն այս առաջադրույթը. ի՞նչ արտասովոր բան կա այդտեղ, կզարմանան նրանք: Պրոբլեմը միշտ էլ առաջնային է եղել: Սակայն դա հիմա առաջադրվում է մարդ-անհատի վերակառուցման և կատարելագործման

# ՀԱՅԱՍՏԱՆԸ XIX ԴԱՐԻ ՌՈՒՍԱԿԱՆ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅԱՆ ԼՈՒՍԱԲԱՆՄԱՄԲ

**Մ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**

ՀԱՅ-ՌՈՒՍԱԿԱՆ հարաբերությունների բազմաբովանդակ ու բազմաբնույթ տարեգրության մեջ առանձնահատուկ տեղ և ուրույն նշանակություն ունեն կարևոր իրադարձություններով հարուստ XVIII դարի պատմության լուսաբանումն ու գնահատումը: Այդ ժամանակաշրջանում վերջնականապես ձևավորվեց հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշումը:

XIX դարի ռուսական պատմագիտական միտքը, անդրադառնալով հայկական պետականության վերականգնման պրոբլեմին, ըստ էության, նպատակադրվել էր ո՛չ միայն արձանագրել հայ-ռուսական քաղաքական դարավոր առնչությունները, այլև ընդգծել Ռուսաստանի հովանավորական, բարեկամական դիրքորոշումը հայ ժողովրդի ու նրա ազատագրական շարժման նկատմամբ: Ռուս պատմագիրները չէին բավարարվում սոսկ մատնանշելով Արևելյան Հայաստանի միացման առաջադիմական նշանակությունը, այլև, հաշվի առնելով Ռուսաստանի ընթացիկ արևելյան քաղաքականությունը, եվրոպական դիվանագիտության լաբիրինթոսում առկա սուր, խճճված ու թերևս անհաղթահարելի հակասությունները՝ ձգտում էին ուշադրությունը սևեռել այդ կարևորագույն փաստի վրա, որպեսզի հնարավորություն ստեղծվեր շահելու ողջ հայության համակրանքը և ունենալու հուսալի հենարան Ռուսիո քաղաքականության կենսագործման համար: XIX դարի ռուսական ազնվականական և բուրժուական պատմագրության ներկայացուցիչները, մասնավորապես լիբերալ-բուրժուական նշանավոր պատմաբան Ս. Մ. Սոլովյովը, ռուսական պատմագիտական դպրոցն անցած Էզովը (Կարապետ Էզյան), Ս. Ն. Գլինկան, ռազմական պատմաբան Վ. Պոտտոն, Կովկասի պատմության քաջ գիտակ Պ. Բ. Բուտկովը հայ ժողովրդի ռուսական կողմնորոշումը համարել են անհրաժեշտ ու անխուսափելի, քաջ գիտակցել, թե ինչ ակնկալումներով էին հյուսիսային հզոր տերության մայրաքաղաք ժամանում հայ ազգային-ազատագրական շարժման ականավոր ներկայացուցիչները, հասկանում, որ այդ ամենը նպատակամղված էր օտարերկրյա բռնատիրական լուծը թոթափելուն, հայ-ռուսական զինակցության հաստատմանն ու հայկական պետականության վերականգնմանը: Այս առումով, միանգամայն օրինաչափորեն, հիշյալ պատմաբանները մեծ տեղ են հատկացնում հայ-ազատագրական շարժման ականավոր ներկայացուցիչ Իսրայել Օրու և նրա զինակից Մինաս-վարդապետ Տիգրանյանցի՝ XVIII դարի սկզբին կատարած մոսկովյան առաքելությանը:

Նախահեղափոխական դարի ռուսական պատմագրության ամենակարկառուն դեմքի՝ Ս. Սոլովյովի, գիտական ծառայությունն այն է, որ նա, մի կողմից, համոզիչ փաստերով հիմնավորեց հայ-ազատագրական շարժման ռուսական կողմնորոշումը, մյուս կողմից՝ ցույց տվեց Ռուսաստանի հովանավորական քաղաքականությունը հայ ժողովրդի և նրա ազատագրական շարժման նկատմամբ: Այս ամենը պատմական վավերագրերով հավաստելու միտումով նա մեջ է բերում Իսրայել Օրու՝ Պետրոս Առաջինին ուղղված նամակը: «Անկասկած, Ձերդ ցարական մեծությանը հայտնի է, որ հայոց երկրում հնում եղել են թագավոր և քրիստոնյա իշխաններ, իսկ հետո իրենց անհամաձայնությունից նրանք ընկան անհավատների լծի ներքո: Մենք 250 տարուց ավելի է հեծում ենք այդ լծի ներքո, և... այդպես մեր թշվառ ժողովուրդը ապրում էր ու ապրում է Ձերդ ցարական մեծությունից օգնություն ստանալու հույսով: Կանխագուշակություն կա, որ մոսկովյան օգոստոսափայլ արքունիքից կգա Ալեքսանդր Մակեդոնացուն խիզախությամբ գերազանցող մեծ թագավորը, նա կվերցնի հայկական թագավորությունը և կփրկի քրիստոնյաներին: Մենք հավատում ենք, որ մոտ է այդ մարգարեության կատարումը» (С. М. Соловьев. История России с древнейших времен. М., 1963, кн. IX (т. 17—18), стр. 387): Ռուսական պատմագիտական մտքի ներկայացուցիչներն իրավամբ գտնում էին, որ ցարը և նրա համախոհ քաղաքագետները հասկանում էին, թե պետության պաշտպանունակության առումով ռազմաքաղաքական ինչպիսի նշանակություն է ստանում Ռուսաստանի նկատմամբ թշնամաբար տրամադրված տերությունների հարևանությամբ այն ժողովրդի բնակեցումը, որն իր ազատագրումը և պետականության վերականգնումը կապում է ռուսական երկրի հետ: «Պետրոս Մեծը,— գրում է Պոտտոն,— առաջին անգամ հայերին դիտեց քաղաքական տեսանկյունից՝ հանճարեղորեն կանխատեսելով Ռուսաստանի գալիք դերը Հայաստանի ճակատագրում: Եվ այդ ժամանակից նրա (Հայաստանի— Մ. Մ.) նկատմամբ սկսվում է ռուսական կայսրերի գործուն քաղաքականությունը» (В. Потто. Кавказская война в отдельных очерках, эпизодах и биографиях, т. 3-й, Персидская война 1826—1828 гг., выпуск 4-й, СПБ, 1887, стр. 714): Ահա ինչու հայ ժողովրդի հայացքը, եզրակացնում է Պոտտոն, ավելի ու ավելի է սևեռվում դեպի հյուսիս (Պոտտո, նշվ. աշխ., էջ 713): Իսկ Էզովի կարծիքով, «Եթե Աստծուն ցանկալի լիներ երկարաձգել Պետրոսի կյանքը, այլ կլիներ մերձկովկասյան երկրների ու ժողովուրդների ճակատագիրը» (Г. А. Эзов, Сношения Петра Великого с армянским народом, СПБ, 1898, стр. LXXIV): Այս ամենը վկայում է, որ «սին արտահայտություն չի եղել» Պետրոսի՝ «Մենք ազնիվ հայ ժողովրդին, հանուն քրիստոնեության, մեր հատուկ ողորմածության և հովանավորության տակ ընդունեցինք» բովանդակությամբ հրովարտակը (տե՛ս Էզով, նշվ. աշխ. էջ LXXIV):

Նման հետաքրքրությունը պատահական չէ, քանի որ Կասպյան արշավանքը թեև ավարտվեց ոչ այնպես, ինչպես ծրագրել էին ռուսական պետական գործիչները և ցանկանում էին հայ ազատագրական շարժման ղեկավարները, այդուհանդերձ այն չափազանց կարևոր նշանակություն ունեցավ հայ-ռուսական քաղաքական հարաբերությունների ու զինակցության հետագա զարգացման համար: Նախ, առաջին անգամ ծավալվեցին ռազմական գործողություններ հայերին պարսկական լծից ազատագրելու, Ռուսաստանի հովանավորության ներքո վերցնելու համար: Ռուսական պետությունը վերջապես դիմեց վճռական միջոցների՝ Արևելքում իր հետապնդած քաղաքականությունն իրականացնելու նպատակով: Երկրորդ, հայ-ազատագրական շարժման հաջողությունը և պետականության վերականգնումը ի վերջո կապվեց հյուսիսային հզոր տերության աջակցության հետ, հիմնովին արմատավորվեց ռուսական կողմնորոշումը: Ավելին, Կասպյան արշավանքի անհաջողությունը չսասանեց հայերի վստահությունը Ռուսաստանի նկատմամբ, որի մասին հատակորեն նշում էր Վ. Պոտտոն. «Այսպես թե այնպես, բայց հայերի հույսերը կարող էին հիմնվել միայն հենց նույն Ռուսաստանի վրա, միայն նա կարող էր պաշտպանել նրանց շահերը իր հզոր իշխանության հովանու ներքո» (Վ. Պոտտո, նշվ. աշխ., էջ 717): Բուն Հայաստանում, նշում է նա, չէր մեռնում հենց Ռուսաստանի օգնությամբ ազատագրվելու գաղափարը: Պոտտոն հիշատակում է, որ 1760 թ. Անգլիայից Պետերբուրգ ժամանեց հայ ազատագրական շարժման մի այլ ականավոր ներկայացուցիչ՝ Հովսեփ Էմինը և «...խնդրեց օգնել հայերին՝ վերադարձնելու իրենց անկախությունը և դրա համար առաջարկեց իր ողջ հարստությունը»: Վ. Պոտտոն և Պ. Բուտկովը քննադատում են Պետրոս Առաջինի հաջորդներից մեկին՝ կայսրուհի Աննա Իվանովնային: Նա հրապարակեց օրենք, որով կարգադրվում էր բոլոր վրացիներին ու հայերին ետ ուղարկել Պարսկաստան, նույնիսկ նրանց, ովքեր չէին ցանկանում վերադառնալ: Ռուսաստանի քաղաքական շահերին հակասող այս որոշումը նրանք իրավամբ համարում էին կայսրուհի Աննայի կառավարության կոպիտ սխալ, ոչնչով չհիմնավորված քայլ, որը, բարեբախտաբար, մի քանի տարի անց հարթվեց հատուկ օրենքով: Սույնով արդեն արգելվում էր Պարսկաստան վերադարձնել ռուսական հպատակություն ընդունած հայերին: Այս և նման փաստերը վկայում են, որ ռուսական պատմագրությունը օբյեկտիվորեն է ներկայացրել պատմական անցքերը, միշտ և ամենուրեք պաշտպանել հայոց դատը, իհարկե, ելնելով Ռուսաստանի արևելյան քաղաքականության շահերից: XVIII դարի երկրորդ կեսին հայոց վերածնությունը ձեռք բերեց արտասովոր լայն զարգացում,— գրում է Վ. Աբազան իր կազմած **Հայաստանի պատմությունը** գրքում,— իշխան Պոտյոմկինի նախագծով ենթադրվում էր Անդրկովկասում ստեղծել

հայ-վրացական հատուկ քրիստոնյա պետություն՝ Ռուսաստանի գերագույն հովանավորության ներքո:

Հնդկաստանում հսկայական միջոցներ ձեռք բերած հայ մեծահարուստներն առաջարկում էին իրենց սեփականությունը հօգուտ Հայաստանի ազատագրման: Նրանցից էին Հովսեփ Էմինը՝ մինչև Եկատերինայի գահակալությունը, իսկ թագավորության ժամանակ մի այլ հայ՝ Շահամիրխանը (տե՛ս «История Армении». Составил В. А. Абаза. СПБ, 1889, стр. 99):

XIX դարի ռուսական պատմագիտական մտքի տեսակետով հայկական պետականության վերականգնման հնարավորությունն ավելի ռեալ դարձավ XVIII դարի երկրորդ կեսին, մասնավորապես ռուս-թուրքական պատերազմների ընթացքում, երբ ռուսական արքունիքը ձեռնամուխ եղավ «հունական նախագծի» կենսագործմանը, որով նախատեսվում էր ստեղծել նաև միայն Ռուսաստանից կախում ունեցող, նրա հովանավորության ներքո հայկական և վրացական քրիստոնյա պետություններ: «Դրանց կենսագործումը,— գրում է Էզովը,— վստահվեց իշխան Պոտյոմկինին» (Գ. Ա. Էզով, նշվ. աշխ., էջ XCII): Այդ նպատակով, շարունակում է պատմաբանը, իշխան Պոտյոմկինն իր եղբորորդուն՝ գեներալ-պորուչիկ Պ. Պոտյոմկինին ուղարկեց մոզդոկյան գծում կանգնած ռուսական բանակ՝ կարգադրելով կապեր հաստատել Վրաստանում, Ղարաբաղում, Ղարադաղում ապրող հայերի հետ: Այդ նույն ժամանակ գեներալ-պորուչիկ Ա. Սուվորովը ժամանեց Աստրախան և սկսեց տեղեկություններ հավաքել Պարսկաստանի, Հայաստանի, Շիրվանի, Գիլանի մասին (տե՛ս Էզով, նույն տեղը, էջ XCII—XCIII): Ռուս նշանավոր զորավարը սերտ կապեր էր հաստատել հայ ազատագրական շարժման ականավոր ներկայացուցիչներ, ռուսական կողմնորոշում ունեցող, ռուսական արքունիքի կողմից լիակատար վստահություն վայելող Հովսեփ Արղությանի, Լազարյանի, հռչակավոր Դավիթ Բեկի թոռ, Արարատյան դեսպանորդ անվանվող Ստեփան Դավիդովի հետ: Հետևաբար, ռուս-թուրքական առաջին պատերազմը (1768—1774 թթ.) առիթ դարձավ ո՛չ միայն վերականգնելու, այլև ավելի ամրապնդելու քաղաքական և զինակցական հարաբերությունները Անդրկովկասի քրիստոնյա ժողովուրդների հետ, և օրինաչափ է, որ Եկատերինա երկրորդը, Թուրքիային պատերազմ հայտարարելիս, Պետրոս Առաջինի օրինակով մանիֆեստով դիմեց նրա իշխանության տակ գտնվող քրիստոնյա ժողովուրդներին՝ կոչ անելով նրանց օգտվել ստեղծված բարենպաստ պայմաններից և տապալել օսմանյան ծանր լուծը, վերականգնել անկախությունը (Էզով, նույն տեղը, էջ LXXXVII):

Նախապատրաստվելով Ռուսաստանի արտաքին քաղաքական շահերին համապատասխանող ռազմական գործողությունների՝ գեներալ-պորուչիկ Պ. Պոտյոմկինը Հովսեփ Արղությանի միջոցով հայ մելիքներին տեղեկացնում էր հայերին օտարերկրյա լծից ազատագրելու Ռուսաստանի պատրաստակամության մասին և պահանջում պատրաստ լինել համատեղ պայքարի: Այդ լուրն ստանալուց հետո հայ մելիքները Գանձասարում, կաթողիկոսի մասնակցությամբ, կրկին հանդիսավորությամբ երդվեցին Ռուսաստանին հավատարիմ լինել՝ միաժամանակ խնդրելով Պոտյոմկինին ռուսական զորքերը մոտեցնել սահմանին: Հովսեփ Արղությանը երաշխավորում էր, որ ռուսական բանակի համար նախապես պատրաստված են հացի և սննդամթերքների հարուստ պաշարներ: Նա հանդիպեց Պ. Պոտյոմկինին և վերստին հիմնավորեց ռուսական բանակի ռազմական գործողությունների համար ըստեղծված քաղաքական բարենպաստ իրադրությունը:

Թեև Եկատերինա երկրորդի գահակալության տարիներին հայ-ռուսական քաղաքական առնչությունների պատմության և հայկական կիսանկախ թագավորության ստեղծման հարցերին Պոտտոն անդրադարձել է հպանցիկորեն, սակայն արտահայտել է չափազանց ուշագրավ տեսակետ և հիշարժան փաստ: «Այդ ժամանակ,— գրել է նա,— կազմվում են Հայաստանն ազատագրելու նախագծեր, և ամենազոր Պոտյոմկինը գործուն հարաբերությունների մեջ է մտնում հայոց արքեպիսկոպոս Հովսեփի (Արղությանի— Մ. Մ.) հետ, որպեսզի Ասիայում ստեղծի հայկական ուժեղ քրիստոնյա պետություն՝ Ռուսաստանի գերագույն ղեկավարության ներքո: Այսպիսով, վերստին թատերաբեմ է մըղվում հայկական հարցը» (Պոտտո, նշվ. աշխ., էջ 718):

Ռուսաստանի քաղաքականությունը պարզ էր ու հստակ, ի հակակշիռ Պարսկաստանի ու Թուրքիայի, այն նախատեսում էր իր իսկ հովանու ներքո ստեղծել հայկական թագավորություն: Նկատի ունենալով հենց այս կարևոր հանգամանքը՝ ռուս



պատմաբան-կովկասագետ Պ. Բուտկովը իր ուշադրությունը սևեռեց գնդապետ Վ. Տամարայի դիվանագիտական առաքելությանը. գտնվելով Ալի-Մուրադ-խանի մոտ և կատարելով Գ. Պոտյոմկինի հրահանգը՝ վերջինս ձգտում էր համոզել նրան համակերպվելու հայկական թագավորության ըստեղծման հետ: Բուտկովի հավաստի վկայությամբ Ալի-Մուրադ-խան Սպահանցին, տիրելով Պարսկաստանի մեծ մասին, մըտադիր էր իրեն հռչակել պարսկական շահ և իր հետնորդների համար ապահովել սեփյան գահը: Սակայն նա քաջ գիտակցում էր, որ իր հեռուն գնացող նպատակների կենսագործման համար անհրաժեշտ էին ռուսաց կայսրուհու ճանաչումը, բարեհաճ վերաբերմունքը և, թերևս, ամենագլխավորը՝ օգնությունը: Ռուսական դիվանագիտությունը փորձեց օգտվել իր համար ստեղծված բարենպաստ դրությունից, և այդ նպատակով իշխան Պոտյոմկինը Ալի-Մուրադ-խանի կամ նրա մինիստրների հետ բանակցելու ուղարկեց գնդապետ Տամարային՝ համոզելու վերջիններիս ընդունելու Ռուսաստանի պլանները Հայաստանի վերաբերյալ: Խոսքը միայն Հայաստանի մասին էր, ինչ վերաբերում է Վրաստանին, ապա, ինչպես նշում է Բուտկովը, նրա մասին ոչինչ չէր ասված, որովհետև վերջինիս բախտն արդեն վըճռվում էր (տե՛ս П. Г. Бутков, Материалы для новой истории Кавказа с 1722 по 1803 год., СПБ, 1869, ч. II, стр. 151): Բուտկովն ամենայն հավանականությամբ նկատի ուներ Գեորգևսկի պայմանագիրը (1783 թ.), որի համաձայն փաստորեն հաստատվել էր Ռուսաստանի հովանավորությունը Վրաստանի նկատմամբ: Պարսկական գահի համար մոլեգնող պայքարը ավարտվեց Ալի-Մուրադ-խանի պարտությամբ և Աղա-Մուհամեդ-խանի հաղթանակով:

Գնդապետ Տամարայի դիվանագիտական առաքելությունն ավարտվեց անհաջողությամբ, և Ռուսաստանն այս անգամ ևս չկարողացավ իրագործել իր պլաններն ու մտահղացումները: «Սակայն այժմ էլ,— գրում է Վ. Աբազան,— հայերի՝ իրագործման այդքան մոտ թվացող հույսերը չարդարացվեցին. պատերազմը Թուրքիայի հետ և Եկատերինա երկրորդի հունական նախագիծը շեղեցին Ռուսաստանի ուժերը մյուս կողմը» (Վ. Ա. Աբազա, նշվ. աշխ., էջ 99): Ավելին, XVIII դարի վերջին Անդրկովկասի ժողովուրդները, առաջին հերթին Վրաստանը, վերապրեցին Աղա-Մուհամեդ-խանի ասպատակությունների արհավիրքները: Բուտկովը նրա գազանությունները ցույց տալու նպատակով դառնորեն գրում է, որ պարսիկներն իրենց սրերի սրությունը փորձելու համար, բռնելով նորածինների և մանուկների ոտքերից, միանգամից բաժանում էին երկու մասի, կատարում այլևայլ բռնություններ ու ոճրագործություններ: Սակայն Աղա-Մուհամեդ-խանը, հաշվի առնելով Ռուսաստանի քաղաքական դիրքորոշումը և քրիստոնյա ժողովուրդների նկատմամբ նրա հովանավորական քաղաքականությունը, որոշեց, ինչպես գրում է Բուտկովը, «...հետաձգել Վրաստանը մինչև վերջ ոչնչացնելու իր մտադրությունը» (Բուտկով, նշվ. աշխ., 2-րդ մաս, էջ 341): Նրա տեսակետով «...ռուսական արքունիքը չէր սպասում ոչ այդպիսի թուլություն Վրաստանի, ոչ էլ այդպիսի արագություն և հանդգնություն Աղա-Մուհամեդ-խանի կողմից» (նույն տեղը, էջ 343): Պարսից շահի ոճրագործությունը Թիֆլիսում քաղաքական ապտակ էր ռուսաց արքունիքին, որովհետև «հըպարտ կողոպտիչը ներխուժեց Վրաստան», ձեռք բարձրացրեց այն երկրի վրա, որը գտնվում էր ռուսական կայսրության հովանավորության ներքո (նույն տեղը, էջ 356): Այդպիսին էին քաղաքական պատճառները, որոնք դրդեցին կայսրուհի Եկատերինա երկրորդին իր գահակալության վերջում ձեռնարկել Կասպյան նոր արշավանք, որի հաջողությունը, անշուշտ, դրական նշանակություն կունենար Անդրկովկասի քրիստոնյա ժողովուրդների համար: «Բայց Գեորգևսկի պայմանագիրը, որով վրաց թագավոր Հերակլ երկրորդը իրեն ճանաչեց Ռուսաստանի հպատակ,— գրում է գեներալ Վ. Աբազան, իր կազմած **Հայաստանի պատմություն** գրքում,— մոռացված չէր: Թուրքիայի հետ Յասիում հաշտություն կնքելուց հետո Ռուսաստանը... Հայաստանի ու Վրաստանի թագավորությունների ազատագրման գործը հանձնարարեց կոմս Զուբովին» (Վ. Ա. Աբազա, նշվ. աշխ., էջ 100): Նախատեսվում էր ռուսաց բանակի հիմնական ուժերն ուղարկել Կասպից ծովի ափերը: Ի դեպ, Էզովի կարծիքով, դրան կողմնակից էր նաև արքեպիսկոպոս Հովսեփ Արղությանը: Ընդհանրապես նա մեծ եռանդ ու ջանքեր գործադրեց ռուսաց արքունիքում մշակված նախագծի իրագործման համար: Արղությանը սերտ կապերի մեջ էր Վ. Զուբովի հետ, նրան կարևոր տեղեկություններ էր հաղորդում Հայաստանի և հարա-

կից երկրների մասին, տրամադրում արժեքավոր քարտեզներ: Եվ այս ամենը հանուն ռուսաց բանակի հաջողության, պարսկական լծի շուտափույթ թոթափման, Հայաստանի ազատագրության և պետականության վերականգնման: Էզովի հավաստի տվյալներով, արքեպիսկոպոսը հանդիպեց Վ. Զուբովին, վերջինս ընդունեց նրան մեծ շուքով ու հանդիսավորությամբ:

Արղության ծառայությունը ռուսաց արքունիքին, որը միաժամանակ հայրենանվեր մեծ գործունեություն էր իր բազմաչարչար ազգի համար, քանի որ նպաստում էր հայկական պետականության հնարավոր վերականգնմանը, չէր կարող անտեսվել ոչ Վ. Զուբովի և ոչ էլ մյուս գործիչների կողմից: Ահա ինչու Զուբովն իր անկեղծ շնորհակալությունն էր հղում արքեպիսկոպոսին՝ խնդրելով նրան «...շարունակել ջերմեռանդ ջանքերը գործերի համընդհանուր հաջողության համար» (Էզով, նույն տեղը, էջ CVII): Սակայն այս նախագիծը ևս մնաց անիրագործելի: 1796 թ. նոյեմբերին մահացավ Եկատերինա երկրորդը, որից հետո կտրուկ կերպով փոխվեց դեպքերի ընթացքը, քանզի Պավել առաջինը, գահ բարձրանալուց անմիջապես հետո, զորքերի հրամանատարին կարգադրեց անհապաղ դադարեցնել ռազմական գործողությունները և վերադառնալ ռուսական սահմանները: Այս որոշման հետևանքները ծանր եղան Անդրկովկասի քրիստոնյա ժողովուրդների համար (տե՛ս Էզով, նշվ. աշխ., էջ CVII):

Ինչ վերաբերում է Պոտտոյին, ապա նա ևս առանց երկմտանքի գրում է. «1796 թվականին պարսկական պատերազմի նախօրյակին գլխավոր հրամանատար կոմս Զուբովի անունով տրված շնորհագրում վերստին ուղղակի ասված է, որ Ռուսաստանը զենք է բարձրացնում հնագույն քրիստոնյա թագավորությունների՝ Հայաստանի ու Վրաստանի, ազատագրման համար: Բայց և այդ փայլուն արշավանքը, ինչպես հայտնի է, ավարտվեց շատ անհաջող. Պավել կայսրը անսպասելիորեն ետ կանչեց զորքերը, և Եկատերինայի բոլոր կանխագծումները... խորտակվեցին: Ռուսական զորքերը,— եզրակացնում է Պոտտոն,— նորից թողեցին Անդրկովկասը և այս անգամ, կարելի է ասել, ուղղակի զոհաբերելով Աղա-Մուհամեդ-խանի գազանություններին» (Վ. Պոտտո, նշվ. աշխ., էջ 721): Այսպիսի պայմաններում «Էջմիածնի հայոց կաթողիկոսը և հայերը,— գրում է Բուտկովը,— խափանելով սպառնացող վտանգը, պետք է վճարեին ռազմատուգանք» (Պ. Բուտկով, նշվ. աշխ., էջ 428): Պարսիկները բավարարվեցին նրանով, որ 1800 թ. սեպտեմբերին Երևանից ներխուժելով Էջմիածին, վանքից կորզեցին 30 հազար ռուբլի, գործելով բազում սանձարձակություններ ու բռնություններ (տե՛ս նույն տեղը, էջ 454—455):

Իբրահիմ խանի ոճրագործություններից խուսափած Վարանդայի մելիքը մելիք Աբովի (որին ի դեպ բարձր էր գնահատում Վրաստանում Ռուսաստանի ներկայացուցիչ Կովալենսկին) եղբորորդու՝ Ֆրիդոնի հետ մեկնեց Պետերբուրգ և խնդրանքով դիմեց ռուսական բարձրաստիճան կառավարող շրջաններին: Հայ մելիքներն առաջարկում էին Ղարաբաղն առնել ռուսական հովանու ներքո, հնարավորություն ընձեռել հայերին բնակություն հաստատելու այդ տարածքում (տե՛ս նույն տեղը, էջ CXIII): XVIII դարում դա փաստորեն հայ-ազատագրական շարժման գործիչների վերջին բանագնացությունն էր Ռուսաստան, վերջին փորձը հզոր տերության անմիջական օգնությամբ իրականացնելու իրենց ձգտումները, որը, սակայն, այս անգամ ևս դրականորեն չլուծվեց: XIX դարի սկիզբը Ռուսաստանի արտաքին քաղաքական ստրատեգիայում նշանավորվեց լուրջ փոփոխությամբ և կտրուկ շրջադարձով: Անդրկովկասում ստեղծված քաղաքական բարդ իրադրությունից ելնելով, մասնավորապես հաշվի առնելով, մի կողմից, ռուս-պարսկա-թուրքական, մյուս կողմից՝ անգլո-ֆրանս-ռուսական սուր հակասությունները, Ռուսաստանը վերանայեց իր հովանավորության ներքո հայկական պետականության ստեղծման պլանները և անցավ տերիտորիալ ձեռքբերումների, մանավանդ որ դարի սկզբին Վրաստանի թագավոր Հերակլ երկրորդի որդի Գեորգի XII-ը, նկատի ունենալով Պարսկաստանի կողմից երկրին սպառնացող նոր աղետալի վտանգը, ինչպես նաև ֆեոդալական երկպառակությունները, որոշեց Արևելյան Վրաստանը միացնել Ռուսաստանին: Այն իրականացվեց 1801 թ. Ալեքսանդր առաջինի գահակալության առաջին տարում և պաշտոնապես վավերացվեց սեպտեմբերի 12-ի մանիֆեստով, ուր մատնանշվում էր, մի կողմից, հայերի նկատմամբ բարյացակամ վերաբերմունք ունենալու անհրաժեշտությունն ու կարևորությունը, մյուս կողմից՝ հայերի Ռուսաստանի հանդեպ ունեցած դրական վերաբերմունքը: Դա միանգամայն օրինաչափ էր, որովհետև Վրաստանի բնակչության մեջ հայերի թիվը փոքր չէր, և այդ պետք է նկատի առնվեր Ռուսաստանի կողմից: «Պարսկաստանի և Թուրքիայի միջև հայկական թագավորության բաժանումից հետո,— գրում է ռազմական պատմաբան Ն. Դուբրովինը,— շատ հայեր անցան Վրաստան, ուր վերաբնակվեցին և Ղարաբաղի մելիքները...



Երկրի ամբողջ առևտուրը հայերի ձեռքին էր: Հայերից ոմանք Վրաստանում զբաղվում էին արդյունաբերությամբ, ոմանք էլ արհեստավորներ էին, իսկ գյուղերում՝ աշխատասեր այգեգործներ ու հողագործներ» (Н. Дубровин. История войны и владычества русских на Кавказе. СПБ, 1871, т. I, кн. II, стр. 117):

Անդրկովկասի ժողովուրդները, մասնավորապես հայերը, ուրախությամբ ընդունեցին Վրաստանի միացումը Ռուսաստանին՝ դրանում տեսնելով պարսկական լուծը թոթափելու մոտալուտ հնարավորություն: Ավելին, պատմաքաղաքական այդ կարևորագույն իրադարձության շնորհիվ, ըստ էության, սկսվում էր Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, որովհետև Վրաստանի տարածքում գտնվող հայկական առանձին շրջաններ միացան Ռուսաստանին: «Հայերի թիվը,— գրում է Պոտտոն,— բուն Վրաստանում այն պահին, երբ նա միացավ Ռուսաստանին, համեմատաբար մեծ չէր, բայց այն սկսեց այժմ արագ աճել... մի քանի տասնյակ հազար հայեր բնակվեցին Վրաստանում և ընդունեցին ռուսական հպատակություն: Հետապնդվելով պարսիկների կողմից՝ հայերը հարյուրներով փախչում էին պարսկական սահմանների խանություններից՝ կորցնելով իրենց ողջ ունեցվածքը» (Վ. Պոտտո, նշվ. աշխ., էջ 721—722): Այլ խոսքով, XIX դարի սկզբին ստեղծվել էին բարենպաստ քաղաքական պայմաններ նաև Արևելյան Հայաստանը պարսկական լծից ազատագրվելու համար, որով կավարտվեր Անդրկովկասում հաստատվելու Ռուսաստանի հետապնդած քաղաքականությունը: Սակայն Վրաստանի միացումից հետո, ինչպես նշվեց, արմատապես փոխվեցին ռուսաց կառավարության պլանները: Եթե XVIII դարում ենթադրվում էր, ի հակակշիռ Պարսկաստանի ու Թուրքիայի, վերականգնել հայկական պետականությունը՝ հայոց թագավորություն ստեղծելու միջոցով կամ կազմավորել հայ-վրացական միասնական պետություն Ռուսաստանի հովանու ներքո, ապա XIX դարի սկզբին այդ մասին արդեն խոսք լինել չէր կարող: XVIII դարում ցարական Ռուսաստանը, ելնելով իր քաղաքական շահերից, շահագրգռված էր այդ պլանի կենսագործմամբ:

Անդրկովկասում ստեղծված քաղաքական նոր իրադրությունը և դրա հետևանքները չեն վրիպել Վ. Պոտտոյի տեսադաշտից: «Վրացական թագավորությունը,— գրում է նա,— Գեորգի թագավորի մահից հետո մտավ Ռուսաստանի կազմի մեջ: Այդ հանգամանքը արագացրեց Հայաստանի ազատագրումը, սակայն արմատապես փոխելով նախորդ նախագծերը՝ այժմ Ռուսաստանին միացած Վրաստանի կողքին վասալական-ինքնուրույն հայկական թագավորության մասին այլևս մտածել անգամ չէր կարելի» (Վ. Պոտտո, նշվ. աշխ., էջ 721): Այժմ Հայաստանի տարածքը իր երկու՝ արևմտյան և արևելյան, հատվածներով լավագույն դեպքում կարող էր միայն մտնել Ռուսաստանի կազմի մեջ, դառնալ կայսրության բաղկացուցիչ մասը: Վերջինս թեև մեծ նահանջ էր XVIII դարում հայ ազատագրական շարժման ղեկավարների մշակած և ռուսական բարձրաստիճան պետական գործիչների կողմից հիմնականում հավանության արժանացած նախագծերի համեմատությամբ, այդուհանդերձ, հսկայական առաջադիմական նշանակություն ունեցող իրադարձություն էր լինելու հայ ժողովրդի քաղաքական կյանքում:

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը նոր դարագլուխ նշանավորեց ռուս և հայ ժողովուրդների դարավոր բարեկամության մեջ: Ինչ վերաբերում է Արևմտյան Հայաստանին, ապա այնտեղ, ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, «20-րդ դարի սկզբում ոչնչացվեց մեկուկես միլիոն հայ..., մեր ժողովուրդը ցեղասպանության ենթարկվեց Հայաստանի այն մասում, որը, դժբախտաբար, դուրս էր մնացել Ռուսաստանի կազմից» (**Հավերժ բարեկամություն,** «Հայաստան» հրատ., 1980, էջ 121): Պատմությունը իրոք աներկբելիորեն հաստատել է Ռուսաստանի բոլոր ժողովուրդների բախտի անբաժանելիության լենինյան թեզը: Առանց ռուս ժողովրդի սոցիալական ազատագրության խոսք անգամ չէր կարող լինել մյուս ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրության մասին:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ուշադրությանն է ներկայացված իրավաբանական գիտությունների թեկնածու Ն. Այվազյանի **Միութենական հանրապետության իրավասությունը և դրա իրականացման սահմանադրական մեխանիզմը** գիրքը*, որը նվիրված է ՍՍՀՄ ազգային-պետական շինարարության հրատապ խնդիրների ուսումնասիրմանը:

Ինչպես հայտնի է, ՍՍՀ Միության մեջ սովետական հանրապետությունների միավորումը բազմապատկեց մեր երկրի ժողովուրդների ուժերն ու հնարավորությունները սոցիալիստական հասարակության կառուցման գործում: Իր գոյության տարիների ընթացքում ՍՍՀ Միությունն իրեն դրսևորեց որպես բազմազգ պետության կառուցվածքի առավել կենսունակ և կատարյալ ձև, որը ներդաշնակորեն համատեղում է ողջ հասարակության շահերը յուրաքանչյուր ազգության շահերի հետ: Ամբողջ պատմական փորձը վկայում է, որ ՍՍՀ Միության կառուցվածքի ֆեդերատիվ սկզբունքները միանգամայն արդարացրել են իրենց: ՍՍՀՄ 1977 թվականի սահմանադրությունը, ամրապնդելով միութենական պետականության հիմունքները, ամեն կերպ նպաստում է նաև միութենական հանրապետությունների դերի բարձրացմանը՝ պետական, տնտեսական և սոցիալ-մշակութային շինարարության գործում: Յուրաքանչյուր հանրապետության նյութական և հոգևոր պոտենցիալի մեծացում և դրա հետ մեկտեղ դրա առավելագույնս օգտագործում երկրի համակողմանի զարգացման համար՝ այսպիսին է այսօր ՍՄԿԿ-ի կուրսը ազգային հարցում: «Հենակարի առումով մշակելով ազգային քաղաքականության հիմնական ուղղությունները,— նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ,— առանձնապես կարևոր է հոգալ, որ միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի զարգացման մեջ բոլոր հանրապետությունների ավանդը համապատասխանի նրանց տընտեսական ու հոգևոր հարաճուն պոտենցիալին»:

Քննարկվող գրքում վերլուծվում է ուսումնասիրվող պրոբլեմի քաղաքական ասպեկտը: Գիտական գրականությունում պետության (ՍՍՀ Միության և միութենական հանրապետության) և նրա մարմինների իրավասության պրոբլեմը հետազոտվում է առանձին-առանձին, միմյանցից մեկուսացված: Այս կապակցությամբ մեծ հետաքրքրություն է ներկայացնում այն դատողությունը, թե պետության և նրա մարմինների իրավասությունը սերտորեն շաղկապված են: Մասնավորապես, միութենական հանրապետության մարմինների իրավասությունն ըստ էության հանրապետության իրավասության արտահայտման ու դրսևորման ձևն է: Հետևապես, ինչպես միութենական հանրապետության իրավասությունը, այնպես էլ նրա մարմինների իրավասությունը բնութագրվում են միևնույն հատկանիշներով, նրանց կառուցվածքը բաղկացած է միևնույն տարրերից (էջ 25):

Արդի պայմաններում առավել հրատապ է դառնում ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների միջև իրավասության խելամիտ բաշխման հարցը: ՍՄԿԿ-ն առաջնակարգ նշանակություն է տալիս ինտերնացիոնալ և ազգային շահերի ճիշտ համադրմանը, աշխատանքի սոցիալիստական բաժանմանը, սովետական հանրապետությունների միջև եղբայրական օգնության ընդլայնմանը: Գրքում դիտարկվում են այն գործոնները, որոնք ընկած են ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների միջև իրավասության բաժանման հիմքում, շեշտվում է ՍՍՀՄ-ի և միութենական՝ հանրապետությունների սուվերենությունը, ամբողջ երկրի մասշտաբով կոնկրետ ճյուղի տարբեր ստորաբաժանումների գործառության փոխպայմանավորվածությունը:

Սովետական սահմանադրության և ընթացիկ օրենսդրության հիման վրա հեղինակը վերլուծում է նաև միութենական հանրապետության իրավական վիճակը և նրա մարմինների համակարգը, լուսաբանում է նրանց ստատուսի սահմանադրային՝ որոշարկման տեսական հարցերը, բացահայտում միութենական հանրապետության իրավասությունը՝ նրա պետական մարմինների առօրյա գործունեությունում:

Գրքում զգալի պրակտիկ նյութ է ընդհանրացված. հեղինակն ուսումնասիրել է միութենական հանրապետությունների, և առաջին հերթին Հայկական ՍՍՀ-ի, գերագույն սովետների և մինիստրների խորհուրդների գործունեության բազմամյա փորձը, բազմաթիվ օրենսդրական ակտեր և դրանց հիմա վրա կատարել մի շարք տեսական հետևություններ: Այս առումով ուշագրավ է այն աղյուսակը, որն արտացոլում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի օրենսդրական գործունեությունը (էջ 63): Հետաքրքրական են նաև միութենական ու հանրապետական օրենսդրության և միութենական հանրապետության կառավարման ապարատի օրենսդրական վիճակի կատարելագործման վերաբերյալ առաջարկությունները:

Գրքում օգտագործված հարուստ նյութը վկայում է, որ հեղինակը բավականին իրազեկ է ուսումնասիրվող պրոբլեմի վերաբերյալ առկա գրականությանը:

Աշխատանքը զերծ չէ նաև առանձին թերություններից: Հեղինակի ոչ բոլոր հետևությունների հետ կարելի է համաձայնել: Բավարար չափով խոր չէ, օրինակ, միութենական հանրապետության սահմանադրական մեխանիզմում ժողովրդական վերահսկողության մարմինների իրավական վիճակի վերաբերյալ փաստարկումը:

Գրախոսվող գիրքը ՍՍՀՄ-ում ազգային-պետական շինարարության պրոբլեմների լուրջ ուսումնասիրություն է:

**Ռ. ԱՎԱԳՅԱՆ**
**Իրավաբանական գիտությունների թեկնածու**

* Н. А. Айвазян. Компетенция союзной республики и конституционный механизм ее осуществления. Изд-во ЕГУ, 1985, 144 стр.

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԴՈՒՍՏՐԵՐԸ

**«Ազատագրական բոլոր շարժումների փորձից նկատվել է, որ հեղափոխության հաջողությունը կախված է այն բանից, թե որքանով են նրան մասնակցում կանայք»:**

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**

ՊԱՏՄԱՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ թեմայով յուրաքանչյուր գրքի հրատարակում իր հիմնական նպատակից զատ հետապնդում է մի վեհ առաքելություն ևս՝ ամեն կերպ նպաստել աշխատավորների, հատկապես երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, նրանց մեջ վառ պահել հայրենասիրության զգացումը:

Այս առումով ուշագրավ է **Մեծ պայքարի հերոսուհիները** ժողովածուն*: Գիրքը, որ կազմված է երեք բաժիններից, ամփոփում է հուշագրություններ ու ակնարկներ՝ նվիրված աշխատավոր մարդու ազատագրության, հեղափոխության հաղթանակի և նոր կյանքի կերտման համար պայքարած մեր հայրենակցուհիներին: Դրանք գրված են ջերմ սիրով և վերստին խոր ակնածանք են առաջացնում հերոս կանանց անձնընդհատակյա աշխատանքի, նրանց անձնուրաց կամքի և հեղափոխության գործին անմնացորդ նվիրվածության նկատմամբ:

Առաջին բաժինը, որ կրում է **Բոլշևիկյան ընդհատակում** խորագիրը, նվիրված է այն կին հեղափոխականներին, որոնք պայքարի ելան շահագործողական, բռնատիրական անարդար կարգերի դեմ և իրենց մարտական ընկերների, ամուսինների, եղբայրների, հեղափոխական ակնավոր գործիչների հետ կողք-կողքի հերոսաբար մարտնչեցին հանուն բաղձալի ազատության: Բանտն ու աքսորը, ծեծն ու

* **Մեծ պայքարի հերոսուհիները**, *«Հայաստան» հրատ., Երևան, 1985 թ.*

խոշտանգումները անկարող էին ընկճել այդ բոցաշունչ հեղափոխականների՝ Փառանձեմ Կնունյանցի, Նինա Ալաջալովայի, Վարվառա Ջափարիձեի, Ջավահիր Տեր-Պետրոսյանի, Նինա Խանոյանի, Շուշանիկ Կուրղինյանի, Մարո Զուրաբյանի, Թամար Մելիք-Շահնազարյանի, Մարո Թումանյանի և շատ-շատերի հերոսական կամքը:

**Հոկտեմբերի բարիկադների վրա և քաղաքացիական կռիվների բոցերում** բաժինը նրանց մասին է, որոնցից շատերի կուրծքը ներկվեց արյունով, որոնց պարանոցը սեղմեց կախաղանի օղակը, ովքեր անօրինակ սխրանքներ գործեցին և մեռան՝ դեռ չապրած: Լուսիկ Լիսինյան, Ռոզա Կասպարյան, Վալենտինա Դրուժինինա, Փառանձեմ Բաբայան, Վարդուհի Բարսեղյան. նրանց արյունը հեղվեց իրենց հավատի ճշմարտության ու արդարության համար: Եվ նրանք իրավունք ունեին ասելու. «Մեր սերնդի համար չկար ավելի բարձր, մաքուր և լուսավոր բան, քան հեղափոխությունը: Այն մեզ համար ճշմարտության, արդարության, խղճի ու երջանկության խորհրդանիշ էր»:

Կրեմլի պատի տակ, մարմարյա սալերից մեկի վրա փորագրված է մեր հայրենակցուհու՝ Լուսիկ Լիսինյանի անունը: Նրա երիտասարդ կյանքը ընդհատվեց Հոկտեմբերյան հեղափոխության բարիկադների վրա, մի ուսանելի կյանք, որը սխրանք էր, խիզախում:

Ռոզա Կասպարյանն ընդամենը 23 տարեկան էր, սակայն բանտային դաժան ռեժիմը չկարողացավ կոտրել նրա անսասան կամքը: Այնտեղից նա մորը գրում է. «...այնպես չեմ ուզում մեռնել՝ դեռ չապրած: Ախր ես գրեթե կյանք չեմ տեսել և, հանկարծ, մեռնել... դե, լա՛վ, թող կորչեն այս մռայլ մտքերը, թե չէ երևի կմտածեն, որ ես վախենում եմ մահից: Հիմարություն է: Ձերբակալության օրվանից մինչև այսօր ոչ մի անգամ չեմ արտասվել, այդպես էլ կմնամ մինչև վերջ»: Իսկ մեկ այլ նամակում նա հավատով, որ երջանիկ օրեր կըգան, գրում է. «Իմ թանկագին մայրիկ, մի՛ տխրիր, երջանկությունը անպատճառ կգա...»: Սակայն դենիկինյանները, դաժան խոշտանգումներից հետո, 1920 թ. փետրվարի 2-ին Գրոզնիում կախաղան են բարձրացնում անվեհեր կոմունիստին:

Նրա մարտական ընկեր Սուրեն Մագաուզովին հաջողվում է իր շապիկից պոկված ծվենի վրա նամակ գրել ընկերներին, որտեղ նա հաղորդել է կախաղանից առաջ Ռոզայի ասած խոսքերը. «Ես մեռնում եմ հանուն կոմունիզմի...»: «Ռոզայի մորը հաղորդեք իմ ջերմ ողջույնը...,— գրել է Մագաուզովը:— Այդպիսի պանծալի, համարձակ աղջկա մայրը չըպետք է տխրի և արցունքներ թափի: Այդպիսի աղջիկներ ունեցող մայրերը երջանիկ են»:

Թեև դաժան ու ծանր խոշտանգումների են ենթարկվում նաև Փառանձեմ Բաբայանն ու Վարդուհի Բարսեղյանը, որոնք զոհ են դառնում դաշնակ մաուզերիստների վրեժխնդրությանը, բայց նրանք մինչև վերջ իրենց պահեցին արի ու անսասան: Կոմունիստ Փառանձեմ Բաբայանը համարձակ, անհողդողդ դիմանում է մաուզերիստների դաժանություններին. «Դահիճնե՛ր, սպանեցե՛ք, բայց հեռու չէ այն օրը, երբ դուք պատասխան կտաք ժողովրդին ձեր բոլոր չարագործությունների համար»:

**Նոր կյանքի կառուցման շեմին.** այսպես է վերնագրված ժողովածուի հաջորդ բաժինը, որն ընդգրկում է սովետական իշխանության առաջին տասնամյակը: Հեշտ չէր վերափոխել գյուղը. դարավոր, քարացած սովորությունները միանգամից փոխելն անհնարին էր: Կուսակցության Կենտրոնական կոմիտեն գեղջկուհիների մեջ տարվող աշխատանքների համար մոբիլիզացրեց կուսակցական-քաղաքական գործունեության փորձ ունեցող մի խումբ կին գործիչների, որոնց նպատակն էր նրանց մասնակից դարձնել երկրի քաղաքական կյանքին ու սոցիալիստական շինարարությանը, աշխատանք տանել անգրագիտության վերացման համար: Ահա այդ դժվարին գործին սիրով լծվեցին կին հեղափոխականները:

Կուսակցական ակտիվ գործունեություն են ծավալել Սաթենիկ Սարուխանյանը, որի մասին սիրով է գրել Մարիետա Շահինյանը **Կինբաժվարը** հոդվածում, Անահիտ Սարգսյանը, Սիրանուշ Պապիկյանը, Գենյա Խոնդկարյանը, Լիզա Ալավերդյանը, Սուսաննա Շահվերդովան, Վարդուշ Տարախչյանը, Թեմզա Զաքարյանը, Լուսյա Խարմանդարյանը, Սերիկ Դավթյանը և շատ ուրիշներ: Մեր ժողովրդի այդ դուստրերը, անասելի զրկանքներ կրելով, իրենց ուժն ու կորովը ներդրեցին երկրի վերակառուցմանը, կուլտուր-լուսավորական աշխատանքին:

Հայ կանանց հետ կողք-կողքի պայքարում էին նաև ռուս, ադրբեջանցի, քուրդ ժողովուրդների դուստրերը: Վալենտինա Դրուժինինան զոհվեց Երևանի համար մղված մարտերում: Քուրդ Զավահիրը, հանելով գլխաշորը, կոչ է անում բոլոր քուրդ կանանց՝ հետևել իր օրինակին: Ադրբեջանուհիների ակումբը ղեկավարող Բյուլբյուլ Քյազիմովան լայն աշխատանք է ծավալել իր հայրենակցուհիների լուսավորության և դաստիարակության գործում: Աքպեր Երևանլու **Հերոսական կյանքի անմոռանալի էջեր** ակնարկը պատմում է ադրբեջանուհի կանանց ակումբի գործունեության մասին:

**Մեծ պայքարի հերոսուհիները** ժողովածուն, որը կազմված է հայ հեղափոխական կանանց, նրանց մարտական ընկերների հուշագրություններից, ակնարկներից ու հոդվածներից, ընթերցվում է հետաքրքրությամբ, այն երախտագիտության խոսք է հեղափոխության նվիրյալներին, որոնք իրենց կյանքն անմնացորդ նվիրաբերեցին նոր կյանքի հաստատմանը:

**Շ. ԱՎԱԳՅԱՆ**



# ԳԻՐՔ ՀԵՐՈՍՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ մեծ պատերազմի տարիները սովետական ժողովրդի տարեգրության հերոսական էջերից են: Հարձակվելով մեր երկրի վրա՝ հիտլերյան Գերմանիան նպատակ ուներ «կայծակնային պատերազմով» զավթել ՍՍՀՄ ընդարձակ տարածությունները, խորտակել աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը, ստրկության մատնել նրա ժողովուրդներին: Թշնամին հույս ուներ, որ պատերազմը երկպառակություն կառաջացնի եղբայր ազգերի միջև, և ինքը հեշտությամբ կիրագործի իր զավթողական պլանները: Բայց դրանք սին պատրանքներ էին միայն: Սովետական ժողովուրդը, այդ թվում և հայ ժողովուրդը, պողպատաձույլ միասնությամբ է՛լ ավելի համախմբվեց հարազատ կուսակցության շուրջը, ի չիք դարձրեց ֆաշիստական զավթիչների խելացնոր ծրագրերը:

Մեծ հայրենականի առաջին ամիսներին «Պրավդայի» էջերում տպագրված խմբագրական հոդվածներից մեկում կարդում ենք. «Հայ ժողովուրդը չի մոռացել հայերի ֆիզիկական ոչնչացումը, որ կազմակերպել էր արյունռուշտ Հիտլերի նախորդ Վիլհելմ կայսրը առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին: Այդ պատճառով, երբ արյունալի հրդեհի պես բռնկվեց պատերազմը, որը սկսել էր մարդակեր Հիտլերը Սովետական Միության դեմ, ամբողջ հայ ժողովուրդը մի մարդու պես ոտքի կանգնեց հայրենիքը պաշտպանելու... Հայ ժողովուրդը հաստատապես իր մարտական տեղն է գրավել անկախության ու ազատության համար Սովետական Միության բոլոր ժողովուրդների մղած ընդհանուր պայքարում»:

Վիթխարի քանակությամբ գրականություն է լույս տեսել համաժողովրդական մեծ պատերազմի վերաբերյալ: Դրանց էջերում իմաստավորվել ու խորությամբ բացահայտվել է տեղի ունեցած ճակատամարտերի ընթացքը, ջերմորեն նկարագրվել հիտլերյան բարբարոսների դեմ արիաբար մարտնչած դյուցազունների սխրանքները: Եվ ահա ընթերցողներին է առաջարկվում մի նոր գործ՝ **Գիրք հերոսների մասին*** ժողովածուն, որը հրատարակության է նախապատրաստել ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտը:

**Գիրք հերոսների մասին** աշխատությունում զետեղված են պատմահրապարակախոսական ակնարկներ հայ ժողովրդի ծոցից ելած 100, ինչպես և մեր լեռնաշխարհում ծնված ու երկար տարիներ անցկացրած 8 այլազգի Սովետական Միության հերոսների և փառքի երեք աստիճանների շքանշանների 27 հայ ասպետների մասին: Դրանք գրված են արխիվային փաստաթղթերի հիման վրա:

Հայրենիքի պաշտպանության համար մղված կենաց ու մահու կռիվներում արիաբար էին մարտնչում հազարավոր հայ զինվորներ: Ամենուրեք նրանք դրսևորում էին արիության ու խիզախության հիանալի օրինակներ: Քաջերից քաջերը արժանացան հայրենիքի բարձրագույն պարգևին:

Գրքի հեղինակները, ներկայացնելով հերոսներին, խստորեն պահպանել են ժամանակագրական սկզբունքը. այստեղ առաջինը ներկայացված է տանկի ռադիստ Կարապետ Սիմոնյանը, որը դեռևս սպիտակ ֆինների դեմ մղված կռիվներում ցուցաբերած խիզախության համար 1940 թ. հունվարի 15-ին, հայ ժողովրդի զավակներից առաջինը, արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման:

* Книга о героях. Издательство АН Арм. ССР. Ереван, 1985.

Գրքում արժանի տեղ է հատկացվել փառապանծ զորավար, Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Հովհաննես Բաղրամյանին: Ունենալով հրամանատարական և շտաբային աշխատողի խոր հմտություն, օժտված լինելով մեծ մասշտաբների ճակատամարտեր վարելու ձիրքով՝ նա աճեն կռիվներում ապահովել է իր հրամանատարությանը ենթակա զորքերի հաղթանակը թշնամու դեմ, հասել փայլուն հաջողությունների:

Զորավար Բաղրամյանը, գործելով սովետական ռազմական արվեստի սկզբունքներով, փայլուն վարպետությամբ վարելով մեծ ճակատամարտեր, պարտության է մատնել հակառակորդի խոշոր զորամիավորումներ, հասել նշանակալի հաջողությունների:

Հաղթանակից հետո նա զինված ուժերում վարել է մի շարք պատասխանատու պաշտոններ, եղել է պաշտպանության մինիստրի տեղակալ, ընտրվել ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, ՍՍՀՄ Գերագույն սովետի մի շարք գումարումների դեպուտատ:

Սովետական Միության մարշալ Հ. Բաղրամյանի գրչին են պատկանում մեծ Հայրենականի հերոսամարտերին նվիրված մի շարք ծավալուն, բարձրարժեք աշխատություններ: Մեր կուսակցությունն ու կառավարությունը ըստ արժանվույն են գնահատել Բաղրամյանի մատուցած ծառայությունները սոցիալիստական հայրենիքին: Նա պարգևատրվել է Լենինի յոթ, Հոկտեմբերյան հեղափոխության, Կարմիր դրոշի երեք, Սուվորովի առաջին աստիճանի երկու, Կուտուզովի առաջին աստիճանի 2 և այլ շքանշաններով: Որպես նվիրված լենինյան և ականավոր զորավար՝ Բաղրամյանը մեծ հարգանք էր վայելում երկրի աշխատավորների շրջանում:

Ջերմ սիրով ու խորին ակնածանքով է գրված ՍՍՀՄ զինված ուժերի ականավոր գործիչներից մեկի՝ Սովետական Միության նավատորմի ծովակալ, Սովետական Միության հերոս Հովհաննես Իսակովի մասին ակնարկը: Տակավին երիտասարդական տարիներից նա իր կյանքն ընդմիշտ նվիրում է աշխարհում առաջին սոցիալիստական պետության պաշտպանության գործին:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին Իսակովը գլխավորել է ՍՍՀՄ ռազմածովային ուժերի գլխավոր շտաբը, կատարել գերագույն գլխավոր հրամանատարության առաջադրանքները բախտորոշ ճակատամարտերում:

Տուապսեի մերձակայքում մղված աճեն ճակատամարտերից մեկում Հ. Իսակովը ծանր վիրավորվում է: Ապաքինվելուց հետո, չնայած առողջական անձնական վիճակին, նա հրամանատարական ղեկավար պաշտոններ է զբաղեցրել գործող բանակում ու նավատորմում, հմտորեն վարել ֆաշիստական հրոսակների դեմ մղված ճակատամարտեր: Ետպատերազմյան տարիներին տաղանդավոր զորավարը աշխատել է որպես ՍՍՀՄ ռազմածովային նավատորմի գլխավոր հրամանատարի տեղակալ, ՍՍՀՄ ռազմածովային նավատորմի մինիստրի տեղակալ և վարել այլ պաշտոններ:

Նավատորմի ծովակալ Հ. Իսակովը ընտրվել է ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ, ՀՍՍՀ ԳԱ պատվավոր անդամ: Ականավոր ռազմական գործչի, նշանավոր գիտնականի գրչին են պատկանում ռազմատեսական, պատմագիտական բազմաթիվ աշխատություններ ու հոդվածներ, գեղարվեստական գործեր:

Համազասպ Բաբաջանյանի հոգում ռազմական արվեստին տիրապետելու սերն արթնացել է դեռևս պատանեկան տարիներին: 1925 թվականին իրականանում է տասնիննամյա կոմերիտականի երազանքը. նա ընդունվում է Երևանի Ալ. Մյասնիկյանի անվան միացյալ հայկական հրամանատարական դպրոցը, ապա ուսումը շարունակում Թիֆլիսի անդրկովկասյան զինվորական հետևակային ուսումնարանում, որն ավարտում է հաջողությամբ:

Կարմիր բանակում Հ. Բաբաջանյանի հրամանատարական կենսագրությունն ընկղվում է դասակապետից, ապա նա նշանակվում է վաշտապետ, գումարտակի հրամանատար: Հետագայում ընդունվում և հաջողությամբ ավարտում է Մոսկվայի Մ. Վ. Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիան:

Հայրենական մեծ պատերազմի առաջին օրերից Հ. Բաբաջանյանը գործող բանակում էր. իր խնդրանքով շտաբային ծառայությունից փոխադրվում է զորամիավորում, նշանակվում գնդի հրամանատար: Ֆաշիստական զավթիչների դեմ մղված դաժան կռիվներում դրսևորվում են նրա հրամանատարական տաղանդն ու կազմակերպչական ձիրքը:



ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. ապրիլի 26-ի հրամանագրով գվարդիայի փոխգնդապետ Համազասպ Խաչատուրի Բաբաջանյանին շնորհվում է Սովետական Միության հերոսի կոչում: Քառասունչորսի օգոստոսին Հ. Բաբաջանյանը նշանակվում է 11-րդ տանկային կորպուսի հրամանատար, ահեղ կռիվներով հասնում Բեռլին, մասնակցում նրա գրոհին:

Մեծ հայրենականից հետո Հ. Բաբաջանյանը ավարտում է ՍՍՀՄ զինված ուժերի գլխավոր շտաբի ակադեմիան: Նա վարել է հրամանատարական բարձր պաշտոններ, արժանացել զրահատանկային զորքերի գլխավոր մարշալի կոչման: Փառապանծ զորապետի կրծքին շողշողում էին Լենինի չորս, Հոկտեմբերյան հեղափոխության, Կարմիր դրոշի չորս շքանշաններ, Սուվորովի առաջին և երկրորդ աստիճանների, Կուտուզովի առաջին աստիճանի, Հայրենական պատերազմի առաջին աստիճանի, Կարմիր աստղի երկու շքանշաններ:

Հայրենական պատերազմը աննախադեպ էր ժողովրդի մասսայական սխրագործության իմաստով: Եվ մենք իրավամբ նրա գլխավոր հերոսը համարում ենք սովետական ժողովրդին: Պատերազմում հայրենիքին անսահման նվիրվածության վառ օրինակներով աչքի ընկան թե՛ շարքային բանվորն ու կոլտնտեսականը և թե ճանաչված մտավորականն ու կադրային զինվորականը:

Քառասուներեքի աշնանամուտին վճռական ճակատամարտ էր մղվում Կովկասը ֆաշիստական օկուպանտներից լիովին ազատագրելու համար: Դասակներից մեկը, որի հրամանատարի օգնականն էր ավագ սերժանտ Հունան Ավետիսյանը, գրոհում էր դեպի Դոլգայա լեռան գագաթը: Կռվի վճռորոշ պահին վիրավոր վիճակում Հ. Ավետիսյանը նետվում է դեպի թշնամու կրակակետը, իր մարմնով փակում գործող գնդացրի փողը, կյանքի գնով ճանապարհ բացում համագնդեցիների համար: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թվականի մայիսի 16-ի հրամանագրով Հունան Ավետիսյանին հետմահու շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում: ՍՍՀՄ զինված ուժերի մինիստրի 1949 թվականի ապրիլի 22-ի հրամանով Հ. Ավետիսյանի անունը առհավետ մտցվեց այն վաշտի անձնակազմի ցուցակում, որի կազմում նա դըրսևորել էր իր անմահ սխրագործությունը:

Մեր հանրապետության կուսակցական, սովետական մարմիններում երկար տարիներ է, ինչ աշխատում է քուրդ ժողովրդի արժանավոր զավակ Սամանդ Սիաբանդովը: Երբ սկսվեց պատերազմը, Ս. Սիաբանդովը Մոսկվայում էր, սովորում էր ՀամԿ(բ)Կ Կենտկոմին առընթեր բարձրագույն կուսակցական դպրոցում: 1941 թվականի հունիսին դպրոցի մյուս ունկնդիրների հետ ռազմաճակատ է մեկնում նաև Սիաբանդովը և նշանակվում Արևմըտյան ռազմաճակատի 217-րդ հրաձգային դիվիզիայի քաղբաժնի հրահանգիչ: Հետագայում մայոր Սիաբանդովը 755-րդ հրաձգային գնդի հրամանատարի քաղաքական գծով տեղակալն էր: Նա զինվորներին ոգեկոչում էր սխրանքների, կռվի դաշտում ցույց տալիս անձնական քաջություն: 1944 թվականի հուլիսի սկզբներին Մինսկի մարզի Մալայա Գորոշկա բնակավայրում հակառակորդը գերակշռող ուժերով անցնում է հակագրոհի: Փոխգնդապետ Սիաբանդովը գտնվում էր գնդի առաջատար գումարտակներից մեկում, որի հրամանատարն ու նրա տեղակալը զոհվում են: Սիաբանդովի գլխավորությամբ ստորաբաժանման մարտիկները արիաբար ետ են մղում հիտլերականների հակագրոհը, փախուստի մատնում թշնամուն: Մարտերում հրամանատարության առաջադրանքներն օրինակելիորեն կատարելու և ցուցաբերած քաջության ու խիզախության համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1945 թվականի մարտի 24-ի հրամանագրով փոխգնդապետ Ս. Սիաբանդովին շնորհվում է Սովետական Միության հերոսի կոչում:

Այստեղ ըստ արժանվույն ներկայացված են գեներալ-լեյտենանտներ Բորիս Ալեքսանդրովիչ Վլադիմիրովի և Սարգիս Սողոմոնի Մարտիրոսյանի մարտական տարեգրությունները: Բ. Վլադիմիրովը ծնվել է Ալեքսանդրապոլ (Լենինական) քաղաքում, նախնական կրթությունն ստացել տեղում: 1921 թվականին նա կամավոր զինվորագրվում է բանվորագյուղացիական կարմիր բանակին, հետևակային դպրոցի սանից հասնում է գեներալ-լեյտենանտի կոչման: Բեռլինի ճակատամարտում իր զորամասերը հմտորեն ղեկավարելու համար արժանանում է Սովետական Միության հերոսի կոչման:

Կորպուսի հրամանատար Ս. Ս. Մարտիրոսյանի կրծքին շողշողում էին 15

մարտական շքանշաններ, որոնց նա արժանացել էր պատերազմի բոցերում դրսևորած հրամանատարական տաղանդի և քաջագործությունների համար: Նա մասնակցել էր քաղաքացիական կռիվներին, Հայրենական մեծ պատերազմի առաջին օրերից եղել ռազմաճակատում ու հմտորեն վարել զորամասերի ու զորամիավորումների մարտական գործողությունները, պատերազմն ավարտել 1945 թվականի մայիսին Պրագայում: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1945 թվականի մայիսի 29-ի հրամանագրով Ս. Ս. Մարտիրոսյանին շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում:

Սովետական ռազմաօդային ուժերի խիզախ բազեների մարտական սխրանքները լայնորեն լուսաբանվել են մեծ Հայրենականի տարեգրության էջերում: Անմոռաց են Սովետական Միության կրկնակի հերոս, լեգենդար օդաչու Նելսոն Ստեփանյանի անօրինակ գրոհները թշնամու զորամիավորումների և ռազմական հենակետերի վրա: Բավական է ասել, որ մեր պանծալի հայրենակիցը պատերազմի սկզբից մինչև 1944 թվականի օգոստոսի 13-ը կատարել է 239 թռիչք, որոնց ընթացքում խորտակել է տարբեր տիպի 13 նավ, ոչնչացրել 80 տանկ, 600 ավտոմեքենա, 140 դաշտային և զենիթային հրանոթ, 130 գնդացրային կետ, 27 տարբեր տեսակի ինքնաթիռ, մոտ 5.000 ֆաշիստական զինվոր ու այլն...

Պատերազմը սերտորեն համախմբել էր երկրի բոլոր ազգերին ու ազգություններին: Ժողովուրդների եղբայրական միասնության մեջ մեծ ուժով դրսևորվեցին լենինյան ազգային քաղաքականության իմաստնությունն ու հեռատեսությունը, ինտերնացիոնալիզմը, սովետական մարդկանց աննկուն կամքը, նրանց հայրենասիրությունը: Գրքում ընթերցողը հանդիպում է Սովետական Միության հերոսներ Իվան Իվանովիչ Բոնդարևին, Խիդր Հասան-օղլի Մուստաֆաևին (ադրբեջանցի), Սերգեյ Աբրամովիչ Սարխոշևին (ասորի), Կոնստանտին Իլյիչ Խաչինին (հույն) և ուրիշների, որոնք ծնվել են Հայաստանի տարբեր շրջաններում, պատվով կատարել իրենց հայրենասիրական պարտքը:

Գրքում համոզիչ կերպով ցույց է տրված կոմունիստների առաջատար դերը ֆաշիստական զավթիչների դեմ մղված գոտեմարտերում: Պատերազմի տարիներին մեր երկրում յուրաքանչյուր հինգ կոմունիստից չորսը գտնվում էր սովետական զինված ուժերի շարքերում կամ աշխատում պաշտպանական ձեռնարկություններում: «Կոմունիստնե՛ր, առա՜ջ» նշանաբանով առաջնորդվելով՝ նրանք միշտ եղել են կռվի վճռական տեղերում, հարկ եղած դեպքում կյանքի գնով ապահովել հաղթանակը:

Անմահ են կոմունիստներ Ասքանազ Կարապետյանի, Ասլավեն Ռոստոմյանի, Ղուկաս Մադոյանի, Խորեն Խաչատրյանի, Ջահան Կարախանյանի և շատ ուրիշների անունները, որոնք իրենց տոկունությամբ ու արիությամբ օրինակ են ծառայել զինակից ընկերներին:

Գրքում փառաբանված հերոսներից շատերը չտեսան 1945 թվականի հաղթական մայիսը, սակայն ժողովրդի հիշողության մեջ ընդմիշտ կմնան նրանց դյուցազնական սխրանքները:

Պատերազմի ավարտից տասնամյակներ են անցել: Թվում է, թե աշխարհի բոլոր պետությունները պետք է դասեր քաղած լինեին կատարվածից: Սակայն այսօր կապիտալիստական տերությունների ռազմամոլ շրջանները, առաջին հերթին՝ ԱՄՆ-ի ներկայիս վարչակազմը, վարելով սպառազինությունների մրցավազքի քաղաքականություն, մարդկությանը կանգնեցրել են նոր, աշխարհակործան պատերազմի սպառնալիքի եզրին:

Անցյալի դասերը, ժողովուրդներին սպառնացող նոր աղետը մարդկությանը պարտավորեցնում են է՛լ ավելի հաստատակամորեն դիմակայել այն սև ուժերին, որոնք փորձում են մեր հողագունդը ներքաշել աշխարհակործան պատերազմի մեջ:

**Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**
**ՀՍՍՀ վաստակավոր ժուռնալիստ,**
**պաշտոնաթող փոխգնդապետ**

*Հանձնված է շարվածքի՝ 4.09.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 15.10.86 թ.: ՎՖ 10845: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 17.732: Պատվեր 1664:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*